# Հասունության վկայականը

ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ

Առաջին ծանր վիշտը՝ հոր մահը, Վլադիմիր Իլյիչը ապրեց տասնվեց տարին չբոլորած, յոթերորդ դասարանում: Գիմնազիայում նա միշտ փայլուն էր սովորել, առաջ անցնելով լավագույն աշակերտներից: Ուսուցիչները նրան հարցնում էին միայն այն դեպքում, երբ դասարանում ոչ ոք չէր կարողանում պատասխանել, կամ էլ նրա համար, որպեսզի նա դասարանին բացատրեր դասը: Յոթերորդ դասարանում Իլյիչի գերազանցությունը հատկապես ակնհայտ էր: Երկրորդ կիսամյակում հանրագումարի էին բերվում ամբողջ անցած դասընթացի արդյունքները: Գիմնազիստներն անգիր էին անում հինը, վաղուց մոռացվածը, իսկ Վոլոդյա Ուլյանովը հիշում էր ամբողջ դասընթացը, ասես երեկ էր լսել: Նա իր մեջ դաստիարակել ու զարգացրել էր ոչ թե տեսողական, այլ լսողական հիշողություն՝ սովորություն ուներ ամբողջ դասը ուշի-ուշով յուրացնել ուսուցչի բացատրությունների ժամանակ, և ինչը մի անգամ լսում էր, կարող էր արդեն չսովորել տանը:

Հորը հաճելի էին որդու հաջողությունները, հպարտանում էր նրանցով: Տղան դեռ մանկությունից սովորություն էր դարձրել հոր առանձնասենյակի մոտով անցնելիս, երբ գիմնազիայից տուն էր վերադառնում, ուրախ-ուրախ, ոտքի վրա, սառնամանիքից կարմրած շրթունքներով զեկուցել. լատիներենից՝ հինգ, երկրաչափությունից՝ հինգ... Եվ ահա հայրը չկար:

Իլյա Նիկոլաևիչի մահից հետո Ուլյանովների ընտանիքի վիճակը քաղաքում փոխվեց: Նախ և առաջ, դժվարացավ ապրելը. թոշակը՝ աշխատավարձ չէր, այրու երեխաներն էլ՝ քաղաքի խոշոր պաշտոնյայի երեխաներ չէին: Եվ երկրորդ, մեծացավ պատասխանատվությունը: Ավագներն արդեն իրենց տեղը կյանքում կիսով չափ գտել էին, բայց Վլադիմիրը դեռևս միայն շրջանավարտ էր, իսկ նրանից հետո կար Օլգան, կային երկու փոքրիկները:

Ուլյանովների տունը, որ գտնվում էր Մոսկովյան փողոցի վրա, առաջ շատերի նախանձն էր շարժում. նախանձում էին ամեն ինչին՝ և՛ տնտեսությունը վարելու Մարիա Ալեքսանդրովնայի հմտությանը, և՛ երեխաների դաստիարակությանը, և՛ ուսման մեջ նրանց հաջողություններին, և՛ այն բանին, որ տանը ցուցադրական ու ավելորդ ոչինչ չկար. և առիթ չէր լինում փսփսալ ու բամբասել: Ահա այդ առանձնահատուկ տնից ծանոթներն սկըսեցին խուսափել:

Իսկ գարնանամուտին, երբ հարկավոր էր քննություններ հանձնել, ստացվեց եղբոր՝ Ալեքսանդրի բանտարկության լուրը:

Բանտարկյալի վիճակը չափազանց ծանր էր:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ

Նա մեղադրվում էր ցարի դեմ մահափորձ կատարելու մեջ:

Վլադիմիր Իլյիչը գիտեր, որ Սաշայի համար «գործը կարող է շատ լուրջ վերջանալ»: Բայց հարկավոր էր նյարդերը զսպել: Հարկավոր էր փողոցով հպարտ անցնել, հարցերին պատասխանել հանգիստ, արհամարհել ակնարկներն ու խայթոցները: Եվ Օլգան ու Վլադիմիրը, առեն պայմանավորված, առեն նրանց ընտանիքի ողջ պատիվը դրա մեջ էր՝ ապշեցնում էին իրենց համադասարանցիներին զարմանալի տոկունությամբ ու հանգստությամբ:

* * *

Քննությունները հիանալի էին անցնում: Մայիս ամիսն էր, քաղաքում բուրում էր լոռին, հոր գերեզմանի վրա ծաղկել էր թղկին, պուրակում բողբոջել էր յասամանը: Ինչպես և բոլոր այդ տարիներին, Վոլոդյա Ուլյանովը՝ լուրջ ու թեթևակի մռայլված, մանկական ուռուցիկ խոշոր շրթունքներով ու շիկահեր, Մոսկովյան փողոցով գիմնազիա էր գնում:

Քաղաքի վրա, գարնանային բույրերով հագեցած մայիսյան քնքուշ օդում, տարածվեցին Սիմբիրսկի նշանավոր ժամացույցի ութ զարկերը: Միշտ այդ պահին Վոլոդյա Ուլյանովն անցնում էր Տոլստոյ իշխանների տան մոտով, և Պետյա Տոլստոյը, նրա համադասարանցին, այստեղ սովորաբար ընկերակցում էր նրան, եթե ոտքով էր գիմնազիա գնում: Բայց հիմա նա չերևաց, իսկ մեկ ուրիշ համադասարանցի, նկատելով Ուլյանովին, արագ շրջանցեց վանքի պարիսպը, երևացին միայն գիմնազիստի գլխարկի ներքո կարմրատակած ականջները:

* * *

Գիմնազիայի հանդիսասրահում այդ օրը շատ դժվար քննություն էր պատմությունից: Պատմության ուսուցիչը բծախնդիր էր և հարցատոմսերը կազմել էր խորամանկ ձևով: Նրա շատ հարցերի պատասխանները չկային դասագրքերում, և հարկավոր էր հիշել, թե ինչ է ասել ուսուցիչը, կամ էլ ինքնուրույն փնտրել բառարաններում ու ձեռնարկներում: Որքա՜ն կուզենային նախօրոք հարցնել Վոլոդյա Ուլյանովին, որ միշտ և ամեն ինչ գիտեր, բայց այս անգամ նրան նույնիսկ հարցուփորձ չարեցին: Նա իր վրա դարձյալ միայն երկար ու խեթ հայացքներ էր զգում:

Վոլոդյա Ուլյանովը եկավ, արձակեց գրքերի կաշեփոկը և փաթաթեց մատին, ինչպես միշտ անում էր: Նստեց, ինչպես միշտ: Միայն այս անգամ նա խիստ գունատ էր:

Քաղաքում գիտեին, որ նրա եղբորը կախաղան են բարձրացրել:

Փոքրիկ քաղաքներում միշտ ամեն ինչ գիտեն ուրիշների մասին: Մինչ Վոլոդյան զգում էր իր վրա ընկերների հայացքները, մյուս՝ կանացի գիմնազիայում, մահվան պես գունատ Օլգան հնչեղ, հաստատուն ձայնով պատասխանում էր ֆրանսերեն լեզվի քննության հարցերին: Աղջիկները թեև հետաքրքրասեր էին տղաներից, բայց ավելի բարի և դեռ վերջերս զվարթ, սրամիտ, դասարանում պաշտված Օլգայի ընկերուհիները հիմա աշխատում էին կամացուկ սեղմել այդ սառը, գունատ, աննանաչելիորեն փոխված աղջկա ձեռքը: Օլգան միանգամից ասես օտար էր դարձել դասարանում:

Ուլյանովից առաջ քննասեղանին մոտեցավ Տոլստոյը: Նա դողդողացող մատներով քաշեց հարցատոմսը: Պատասխանը միջակ էր, կցկտուր՝ «երեքի»: Տոլստոյից հետո սեղանին մոտեցավ Վլադիմիր Ուլյանովը:

Ես շատ անգամ եմ առիթ ունեցել պատմելու, թե քննության ժամանակ ինչպիսի հրաշալի տոմս

# Արտույտ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Պստի՛կ արտույտ, մանրիկ տոտիկ,
Թռի՛ր երկինք, շո՛ղ գտիր,
Իջի՛ր երկիր, կանաչ խոտիկ,
Փափուկ-տաքուկ հո՛ղ գտիր:

Գտի՛ր հատիկ, պաղ-պաղ շաղիկ,
Ու տո՛ւր թևիդ, թը՛ռ արա,
Դու սիրում ես խաղ ու տաղիկ,
Երգի՛ր անուշ, թռվռա՛:





# Ծիծեռնակ

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Ծիծեռնակ եմ, ծիծեռնակ,
Աշխարհն առած թևիս տակ,
Կարմիր արև եմ բերում,
Գարնան օրեր եմ բերում:
Լցնում եմ կյանքն արևով,
Իմ մի հատիկ բարևով՝
Ծլում է սերմը հողում,
Ծաղիկներն են շողշողում...
Ճամփան՝ ազատ, ճամփան՝ տաք,
Չկան դռներ իմ դեմ փակ,
Իմ թռիչքին չափ չկա,
Ինձ համար խորթ ափ չկա:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

է քաշել Իլյիչը: Ճակատագրի տարօրինակ քմահաճույքով խորամանկ պատմիչանը կազմել էր մի այնպիսի հարցատոմս, որտեղ ասես դիտավորյալ հավաքված էին հեղափոխությանը և դասակարգային պայքարին վերաբերող հարցեր: Տոմսի առաջին հարցը լեռները քաշված հռոմեական պրոլետարների մասին էր, որոնք իրենց իրավունքների համար պայքարում էին հռոմեացի գոռոզ պատրիկների դեմ:

Ուլյանովը գիտեր, որ ինքը սովորական քննություն չի հանձնում: Նա իր ընկերների հետաքրքրասեր-վախկոտ հայացքների առջև, հին և քնատ ազնվականական ողջ Սիմբիրսկ քաղաքի առջև քննություն էր հանձնում՝ իրավունք նվաճելու իր հետագա կյանքի համար, կրթության, համալսարան ընդունվելու իրավունքի համար: Երեկ այնպիսին էր, ինչպիսին բոլորն էին, իսկ հիմա՝ եղբայրը կախաղան է բարձրացվել:

Եղբայրն ուզում էր, որ բոլոր մարդիկ հավասար լինեն: Բայց մի՞թե միայն եղբայրն է այդ ցանկացել: Նա կարդաց քաշած հարցատոմսը՝ պլեբեյների պայքարը պատրիկների դեմ, չքավորներինը՝ հարուստների: Աշխարհի պատմությունը լի է պայքարով: Վլադիմիր Ուլյանովն սկսեց պատասխանել: Նա խոսում էր կիսամանկական, թոթովախոս ձայնով՝ հնչեղ, պարզ, խորը, հանգիստ: Ուսուցիչը ինքնաբերաբար ինչ-որ բան էր գծում թղթերի վրա և գլխով շարունակ հավանության նշաններ անում, քննողները հայացքներ էին փոխանակում. աշակերտն այնքան փայլուն է պատասխանում, որ որևէ դիտողություն անհնար է անել: Գիմնազիայի զառամյալ դիրեկտոր Կերենսկին մտովի նույնպես հավանություն տվեց Ուլյանովի պատասխանին. թեև վտանգավոր է, բայց ոչինչ անել չես կարող, հարկադրված են ոսկե մեդալ շնորհել, չի կարելի չտալ. Ուլյանովը մի գլխով բարձր է ամբողջ դասարանից:

Ինչի՞ մասին էր մտածում այդ պահին պատանի Լենինը: Նրա աչքերի առջևով արդեն անցել էին երկու մեծ կյանք: Խաղաղ, կուլտուրական աշխատանքի ճանապարհով էր գնացել սիրելի հայրը,

# ԱՆՁՐԵՎ

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*



Անձրև՛, ցա՛ծ իջիր,
Իջի՛ր խշշոցով
Եվ դաշտ ու սարին
Փարվի՛ր կարոտով:
Թող չճաքճքի
Ծույլը մայր հողի,
Թող թախիծ չիջնի
Աչքին խաղողի:
Թող լցվի այգին
Խնձորի բույրով,
Նախշուն հավքերի
Գեղգեղանքներով:
Եվ ամառն անցնի
Երբ ճամփով իր հին,
Մի առատ աշուն
Փռվի աշխարհին:





երբեք չմոռրելով հեղափոխության մասին: Եվ նա դեռևս կենդանության օրոք տեսել էր իր իդեալները ոտնահարված. երկար տարիների ջանքերով բացված դպրոցները փակվել էին: Հոր ճանապարհը հանգել էր փակուղու:

Տեռորի ճանապարհով, պայքարի ճանապարհով մեն-մենակ ցարիզմի դեմ դուրս եկավ սիրելի եղբայրը, և այդ ճանապարհը նրան տարավ դեպի անօգուտ մահը: Ոչ, այդ ճանապարհով չէ, որ կարելի է ժողովրդի համար մարդուն արժանավայել կյանք նվաճել:

Եվ հասակ առնելով, Լենինը ստեղծեց կոմունիստների—բոլշևիկների մեծ կուսակցությունը: Այդ կուսակցությունը ոչ միայն մեր ժողովրդին՝ տասնհինգ սովետական հանրապետությունների ժողովրդին, այլև ողջ աշխարհի աշխատավոր մարդկությանը մատնանշեց դեպի արդար, մարդկային կյանքը տանող միակ ճշմարիտ ուղին:

*Թարգմ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

# Ջարեհույր

Լինում է չի լինում մի աղքատ տղա: Սա մի պառավ մորից բացի, ոչինչ չի ունենում, ո՛չ եղբայր, ո՛չ քույր: Աշխատում է մի հարուստի մոտ գիշեր ու ցերեկ և վարձ չի ստանում, հարուստը նրան միայն կերակրում է, այն էլ՝ շատ վատ:

Մի օր էլ մայրն ասում է տղային.

— Հարուստը քեզ սովատանջ է անում: Ավելի լավ է մնաս տանը: Անտառից փայտ կբերես, կծախենք աղքատներին, ճիշտ է, նրանք քիչ փող ունեն, բայց մի կերպ կապրենք:

— Թող քո ասածը լինի,— ասում է տղան:

Առավոտյան, արևը դեռ դուրս չեկած, նա վերցնում է պարանը, կացինը, հրաժեշտ է տալիս մորը, որ գնա:

— Տղա՛ս,— ասում է մայրը,— վերցրու այս գարեհացը: Ուրիշ բան չունենք: Չուտես այս հացը, կպահես այնքա՛ն, մինչև որ մեղր դառնա, նոր կուտես:

Տղան հացը փաթաթում է թաշկինակի մեջ, դնում թևի տակ և ճամփա ընկնում:

Մինչև կեսօր, մեջքը ծռած, աշխատում է: Հոգնում է: Փորը դատարկ էր, առավոտվանից բերանը մի փշուր հաց չէր դրել: Հանում է հացի կապոցը, բացում, տեսնում է հացն ինչպես կար, այնպես էլ մնացել է, դեռ մեղր չի դառել:

Թեև շատ էր քաղցած, բայց մոր խոսքից դուրս չի գալիս, չի ուտում:

Հացը պահում է ծոցում և շարունակում է աշխատել: Կացինը այնքան է տանում բերում, մինչև աչքերի առջևը մթնում է:

— Հիմա երևի հացն արդեն մեղր դառած կլինի,— ասում է ինքն իրեն և կապոցը նորից է բացում:

Նայում է՝ հացն ինչպես կար, այնպես էլ մնացել էր:

Տղան տխրում է.

— Մայրս խաբել է ինձ:

Եվ որոշում է հացն ուտել: Կծում է, և ի՞նչ, մեղրից էլ անուշ համ է առնում:

Ամաչում է տղան.

— Ների՛ր, մայրի՛կ, կոպիտ խոսքիս համար՝ ների՛ր: Հացը այնպե՛ս է քաղցրացել, հացն իսկապես որ մեղր է դառել:





# ՎԱԶՔԸ

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Դասարանում կար Սամադ, կար Մադաթ, կար Ամըրխան, բայց Օտար մենք Արտավազդին էինք ասում: Չգիտեի ինչու էինք Օտար ասում, բայց Օտար էինք ասում: Հիմա գիտեմ: Նրա եղբայրները դառնալիս էին եղել մեկ տարեկան ու մեռնելիս: Նրանից առաջ ծնված նրա եղբայրները դառնալիս էին եղել մեկ տարեկան ու մեռնելիս, և պառավները նրա մորը խորհուրդ էին տվել ծնված մյուսի վրա թուրքի ու քրդի մի օտար անուն դնել: Մահը չէր հասկանա, իբր, որ օտարի անվան տակ հայի տղա է ու ետ կըդառնար ձեռքերը պարապ: Այդպես: Նրա հայրն ու մայրը լսել էին պառավների խորհուրդը՝ երեխայի վրա դրել էին թուրքի թե քրդի Արտավազդ օտար անունը և սպասել: Անցորդը, նրանց ցանկապատին հենված, նրա մորից մի բաժակ ջուր էր խնդրել և երկար կյանք էր մաղթել նրա գրկի տղային: Մայրը տխուր ժպտացել ու ասել էր, որ օտար անուն են դրել, որովհետև... և անցորդը պայծառ ժպտացել ու ասել էր, որ դա օտար անուն չէ, իսկական հայի անուն է: Նրա մայրը սարսափից քարացել էր, խնձորենու տակ նրա հայրը հուսահատ ժպտացել ու տեղում նստել էր: Այդպես:

Անունը հայի անուն էր, երեխան, սակայն, չէր մեռել, ապրում էր, դասարանը նրան Օտար էր ասում:

Օտարի մայրը գրադարանի հավաքարարն էր. ավլում էր, ջուր էր բերում, փոշին սրբում ու գրքերը գըրքերի արանք էր մտցնում գլխիվայր, որովհետև անգրագետ էր: Նա գրադարանի հին պաստառը, որին կավճաշաղախով դաջված էր եղել ԿՈՐՉԵՆ ՕՏԱՐԵՐԿՐՅԱ ԶԱՎԹԻՉՆԵՐԸ, վառ կարմիր այդ պաստառն ահա գրադարանից տարել էր տուն, լվացել էր և որդու համար վերնաշապիկ էր կարել:

Օտարի հոր սիրտը հիվանդ էր. նվում էր ու չէր մեռնում, նվում էր ու չէր մեռնում: Նվում էր ու ռազմաճակատ չէր գնում, իրենց տանը իր որդու կողքին էր, մեր կողքին չէր, իր որդու կողքին էր: Նա գյուղի միակ տղամարդն էր. նա ամաչում էր այն բանի համար, որ ինքը գյուղի միակ տղամարդն էր: Նա մեր մայրերի ձեռքից կացինը վերցնում էր, որպեսզի ինքըն աներ փայտ ջարդելու այդ տղամարդու գործը, մի երկու անգամ խփում էր գերանին և կնճռոտվում ու բռնում էր սիրտը. նվում-նվում էր ու չէր մեռնում: Նվալով կար, հայր էր, իր Օտար որդու հայրն էր, իր որդուն էր օգնում լուծելու մաթեմատիկայի խնդիրները, իսկ մեր հայրերը ռազմաճակատում էին: Վաղ լուսաբացի սառնամանիքը ճաքճքեցրել էր իմ ձեռքերը. ես մի կերպ կարողանում էի խոտ տալ կովերին, մի կերպ բռնում էի թիու կոթը և մաքրում գոմը, բայց չէի կարողանում գրիչ բռնել. գրիչի տակ մատներիս մեջ ծակծկոցով փշեր էին արթնանում: Մեր բոլորիս ձեռքերն էին ճաքճքած, ես ինչո՞ւ եմ ասում «իմ ձեռքերը», «իմ մատները», որովհետև ես հիշում եմ իմ ցավը: Իմ մարմինը հիշում է միայն իր ցավը:

Երբ Օտարը դասարան մտավ կարմիր վերնաշապիկը հագին, մենք բոլորս կարծեցինք աղջիկ ներս մտավ: Հետո տեսանք, որ Օտարն է, կարմիր վերնաշապիկ է հագել, և բոլոր տղաներս դարչնագույն ենք, տնագործ բրդե մեր շորերը միայն դարչնագույն են: Մենք գետն ի վար իջնում էինք, գնում մինչև Աղոցարաններ ու շալակով կաղնու կեղև էինք բերում, որպեսզի մեր մայրերը կաղնու կեղևով դարչնագունեն բուրդը, իսկ Օտարն ահա կարմիր վերնաշապիկ էր հագել: Մի րոպե մենք լռեցինք ու լուռ մտածեցինք, որ Օտարի հայրը նվում է ու չի մեռնում, Օտարի մայրը տարել է գրադարանի կարմիր պաստառը և կարմիր վերնաշապիկ կարել: Ես թուքս կուլ տվի ու չասացի, որ նրա մայրն ուրեմն գողացել է կարմիր...

— Աղջկա շոր ես հագել,— ասացին:

Օտարը խոնարհեց աղջկա իր երկար թարթիչները և թուքը կուլ տվեց. ես տեսա ադամախնձորի դանդաղ վերուվարումը նրա բարակ վզին: Ես գնացի նստեցի իմ տեղը, որպեսզի նրանից հեռու լինեմ և նրա մասին որևէ սրամտություն չանեմ: Բայց ես չէի կարողանում չնայել նրա կարմիր վերնաշապիկին:

— Դու դրոշակ ես,— ասացին:

— Հերոսության դրոշակ ես:

Ապա ես լսեցի Մադաթի շատ չոր ձայնը.

— Քո հոր հերոսության դրոշակն ես:

Դա անթույլատրելի սրամտություն էր: Մադաթի հայրը զոհվել էր, Օտարը Մադաթին չէր կարող ասել. «Ո՛չ, քո հոր հերոսության...»

Հայացքը խոնարհած՝ Օտարը կանգնել էր ու նըրանցից չէր հեռանում: Պատմության ուսուցչուհին եկավ, ամեն մեկն անցավ իր տեղը, իսկ Օտարը իր կարմիր վերնաշապիկով, դասարանի դեմ կանգնած էր հայացքը կախ:

— Ինչո՞ւ չես անցնում տեղդ,— ասաց պատմության ուսուցչուհին:

— Կարմիր վերնաշապիկ է հագել,— ասացին:

— Այո՛,— ասաց պատմության ուսուցչուհին:

Դանդաղ, ասես կավացեխի միջով, մեր հայացքների տակ նա եկավ նստեց իմ առջև՝ իր տեղը:

— Կարմիր վերնաշապիկ է հագել,— ասացին բնագիտության ուսուցչուհուն:

— Այո՛:

— Հոր հերոսության դրոշն է:

— Ո՛չ,— ասաց բնագիտության ուսուցչուհին,— ձեր նախանձի դրոշն է:

Մաղաթի սրամտությունն այդպիսով ձախողվեց: Մաղաթը նայեց ինձ՝ սպասելով, թե ես իր համար մի նոր կծու բան կմտածեմ, բայց ես խուսափեցի: Երբ ես բարձրացրի հայացքս՝ Մաղաթն ինձ նայում էր ատելությամբ:

Օտարի մայրն ինչքան էլ լվացել էր՝ կավճաշաղախը կարմրի վրայից չէր անցել, լավ չէր անցել. օճառ չկար, միայն տաք ջրով ինչքան էլ լվացվել էր՝ սոսնձի ու կավճե շաղախը պաստառի միջից չէր անցել: Մի քիչ էլ սրվելով, ես տեսա հին տարի լրիվ հետքը՝ Տ: Անմիջապես Տ-ի կողքին Օ տառն էր: Ես դա զրո էի տեսնում, բայց զրոյի կողքինը թվանշան չէր, այլ Ա: Թիկունքով նա իմ հայացքը երևի զգում էր, որովհետև կուչ էր գալիս: Ես ամաչեցի ու ինձ ասացի, որ նրա թիկունքին, նրա նիհար ուսերին, նրա բարակ վզին ու ծոծրակի փոսին չեմ նայելու, բայց նա քարացել ու աչքիս դեմ պահել էր հենց Ա տառի կողքին՝ Ր: ՕՏԱՐ:

«Օտար», մտքիս մեջ ասացի ես: «Օտար», ասացի ես շշունջով, որպեսզի միաժամանակ ասած լինեմ ու ասած չլինեմ:

— Կարմիր վերնաշապիկ է հագել,— ասացին աշխարհագրության ուսուցչուհուն:

— Պատերազմը վերջանա՝ բոլորդ էլ կհագնեք,— ասաց ուսուցչուհին:

«Օտարի մեջքին գրված է ՕՏԱՐ», ասացի ես մտքիս մեջ, որպեսզի բարձրաձայն չասեմ:

Դասամիջոցին ես ու Մաղաթը կռվեցինք: Դա, իհարկե, կռիվ չէր, բայց ինչպե՞ս չէր կռիվ, եթե Մաղաթը նստել էր իմ կրծքին և կեղտոտ ձնագունդը խցկում էր իմ բերանը: Բերանս սեղմած՝ ես գլուխս փախցնում էի, իսկ նա կատաղում և դարձյալ ու դարձյալ ուզում էր խցկել կեղտոտ ձնագունդը իմ բերանը: Եթե ես թիկունքի էի ընկած և ինքը պինդ նստած էր իմ կրծքին՝ նրա համար դա հաղթանակ չէր, իր կեղտոտ ձնագունդը նա սեղմում ու սեղմում էր իմ բերանին և կատաղում էր այն բանի համար, որ իմ բերանը չէր բացվում, դեռ չէր բացվում:

Իսկ հետո արդեն եկավ ռազմագիտության ուսուցչուհին:

Մենք շարվեցինք, ձախ դարձանք և, նրա պողպատե հայացքի տակ, սպասեցինք: Մի րոպե մենք այդպես սպասում էինք, և մեր դեմքերից դանդաղ սըրբվում էր դասամիջոցի աշխուժությունը, մեր մեջ մեռնում էին դասամիջոցի կատակները: Այդպես սրբվեց, այդպես մեռան, և տակը մնաց գունատ երեխաների մեր շատ լուրջ ու մի քիչ վախվորած շարքը: Նրա եղբայրը զոհվել էր ռազմաճակատում, և նրա առջև, զոհված եղբոր համար, մենք բոլորս մեզ մեղավոր էինք զգում, թեկուզ մեղավորը մենք չէինք, և հարգանքի հետ նաև վախենում էինք նրանից, որովհետև երբ նա մեզ նայում էր, ամեն անգամ, երբ նայում էր՝ մեզ թվում էր, թե մենք ենք սպանել նրա եղբորը: Շաբաթից-շաբաթ և դասից-դաս խստությունը նրա դեմքին կարծրանում էր, և մենք հասկանում էինք, թե նրա համար ինչքան լավն էր եղել նրա եղբայրը, ինչքան խորն էր եղել եղբոր սերը նրա մեջ և ինչքան մեծ է նրա վիշտը:

Ես թուքս կուլ տվի ու մտածեցի, որ լավ կլիներ, եթե իմ անգրագետ մոր փոխարեն իմ մայրը նա լիներ. այդ դեպքում նրա մաթեմատիկայից ես չէի վախենա, իսկ նրա ռազմագիտությունից ես չէի վախենում:

— Ի՞նչ է,— շշնջաց նա:

Ես ընդամենը թուքս կուլ էի տվել ու մտածել, որ... «Ոչինչ», չասելու պես ցածր ասացի ես, կանգնեցի զգաստ ու զղջացի մտածածիս համար:

Աղջիկները շարքից դուրս եկան. նշանակում է՝ նա շշնջացել կամ միայն նայել էր, և աղջիկները հասկացել էին, որ իրենց հրամայված է շարքից դուրս գալ: Ձմռան ու գարնան այդ կեղտոտ արանքում գյուղի ամբողջ կարմիրը, նարնջին, կանաչը նրանց հագին էր, նրանք անաղմուկ խմբվեցին ու մեր դարչնագույն շարքին նայեցին մի քիչ հեգնանքով, մի քիչ էլ սիրով: Մինչև հիմա ես հիշում եմ նրանց խաժ աչքերի բույլը: Բույլը՝ այսինքն խումբը, այսինքըն՝ երբ աղջիկները խմբված են ու բոլորը միասին քեզ են նայում: Կարելի է ասել՝ աստղաբույլ, կարելի է ասել երիցուկի բույլ, աստղածաղկի բույլ, կարելի է ասել, երբ նրանց հայացքը մաքուր է և նրանք քեզ նայում են մի քիչ հեգնանքով ու մի քիչ էլ սիրով, աղջիկների խաժ աչքերի բույլ:

Նա ունքերը հավաքեց, և տղաների մեր շարքը խտացավ:

Նա դանդաղ բարձրացրեց դեմքը և շարքի մի ծայրից, բոլորիս ու յուրաքանչյուրիս վրայով, մյուս ծայրը տարավ իր կանաչ աչքերի լուրջ հայացքը: Շարքը հասկացավ, որ... Շարքը մի վայրկյան, ինքը իրեն համրելուց առաջ, քարացավ, ապա ես լսեցի շատ չոր՝ քարով քարի խփելու պես.

— Մե՛կ:

— Երկո՛ւ,— իմ թիվն ինձնից ձախին նետեցի ես: Մի կիսահայացքով ես նկատեցի մեր շարքի ամբողջ դարչնագունությունը և շարքի ամենածայրում՝ մի մի կենտ կարմիր վերնաշապիկ:

— Ո՛ւթ:
— Ի՛նը:
— Տա՛սը:
— Տասնմե՛կ:
— Տասներկո՛ւ
— Տասնե...— եկավ Օտարի անհամարձակ ձայնը: Աղջիկների աչքերում ժպիտի պես մի բան երևաց, իսկ ուսուցչուհին դարձյալ տարավ իր կանաչ աչքերի խիստ հայացքը շարքի մի ծայրից, բոլորիս վրայով, մյուս ծայրը: Խոր լռություն էր, մենք շունչներս պահել էինք, այդ լռության մեջ կայծկլտում էին աղջիկների աչքերը: Ես լսում էի իմ սրտի զարկերը և նույնիսկ լսում էի, թե իր մտքի մեջ ինչ է մտածում № 1-ը № 13-ի մասին: Ինձ թվում էր, թե իմ սրտի զարկերը № 1-ի սրտի զարկերն են և № 13-ի մասին նրա մտածածը ես եմ մտածում:

— Ուռաա՜ա...— ծնվեց, հեռու Սուր բլուրին հասատվեց ու Մեծ հովտով մեկ ձյուների վրայով ծավալվեց մինչև գյուղ ութերորդ դասարանցիների կանչը,— աաա-ա՜աա...

Նրանք զորավարժություններ էին անում: Նրանց հրացանները մեր հեռվից իսկական էին երևում, նըրանց ձայների պատանեկան հնչումը խլանում էր խըմբային աղաղակի մեջ, և դա թվում էր իսկական գրոհ Սուր բլրի լանջերն ի վար Մեծ հովտով դեպի Ձնծաղկի բլուր: Նրանց սև կետերը հիմա չէին երևում, միայն բլրի սպիտակ լանջն էր, իսկ նրանց աղաղակը լսվում էր. ուրեմն՝ նրանք հովտում էին, գրոհում էին Ձնծաղկի բլուրը: Այնինչ՝ Ձնծաղկի բլուրը լռում էր: Իմ աչքերը լարվելուց արցունքոտվեցին, բայց Ձընծաղկի բլուրը միայն մաքուր սպիտակ էր, ոչինչ այնտեղ չէր շարժվում ու լուռ էր: Մենք բոլորս նայում էինք Ձնծաղկի բլուրին: «Թշնամին սպիտակ շոր է հագել», մտածում ու լարված նայում էինք մենք, «թշնամին», այնինչ, հայտնվել էր նրանց թիկունքում, նույն Սուր բլրի լանջին էր, լուռ ու արագ իջնում էր, նրանց ետևից արդեն հովիտ էր մտնում: Ութերորդ դասարանցիները դեռ միայն «ուռա՜» էին գոռում, իրենց հերոսական աղաղակը լցրել էին իրենց ականջները և չգիտեին, որ դա տխուր ու հիմար «ուռա» է:

Ութերորդ դասարանցիների այդ միամտության պատճառով ուսուցչուհու դեմքին զզվանք խաղաց: Եվ, ասես դատարկ բլուրը գրոհող միամիտները մենք էինք, զզվանքով նա մեզ հրամայեց.

— Զգա՜ստ: Հաշվա մի մեկից վերջ թի՛վ տուր:

Իմ ականջի մոտ հնչեց քարով քարի խփելու պես.

— Մե՛կ:

— Երկո՛ւ,— իմ թիվն ինձնից ձախին նետեցի ես:

— Երե՛ք:

Նա հիմա մեզ կբաժանի երկու խմբի. կենտ թվակիրները՝ առաջին խումբ, զույգերս՝ երկրորդ: Օտարը տեսնես կե՞նտ է, թե՞ զույգ: Երանի կենտ լինի: «Տասներեք» թիվը կերկերաց Օտարի անհամարձակ ձայնի մեջ:

— Տասնչո՛րս:

Բայց նրանք՝ և՛ պարտված ութերորդցիները, և՛ հաղթած յոթերորդցիները, որոնց ձայները ձյունածածկ Մեծ հովտում այդ պահին բռնկվեցին շատ ուժեղ, բոլորը նրա աշակերտներն էին, և այդ № 1 Մադաթը նրա զոհված եղբոր որդին էր, և Օտարի ձայնը վախեցած էր, և աղաղակը հովտում հանգավ, և տնագործ նեղ տաբատներով մենք եվրոպացի ասպետների նման էինք, իսկ հովտի տղաները երևի հոգնած թափվել ու ձյուն էին ուտում,— ահա այս բոլորի կամ այս բոլորից միայն մի բանի համար (կամ գուցե Օտարի վրա նա տեսել էր Տ տառը) ուսուցչուհին մի քիչ, հազիվ նկատելի ժպտաց, և ես դարձյալ մըտածեցի, որ լավ կլիներ, եթե իմ մայրը նա լիներ: Այդպես էր. մեզ համար նրա մի ժպիտն ավելին էր, քան մեր մայրերի մեզ լողացնելը, այդ ձմռան մեջ տաք ջրով մեզ լողացնելը:

— Երկու շարք կա՜զ-մի՛ր:

Տրեխավոր ոտքերի փափուկ քայլերով զույգ թվակիրներս երեք քայլ առաջ ու մի քայլ կողքի գնացինք: Ես տեսա, որ թեկուզ փոքրիկ, թեկուզ յոթ հոգիանոց շարքի գլուխ կանգնելն ինձ դուր է գալիս:

— Առաջի՛ն շարք, գետն ի վեր մինչև Տաք աղբյուր՝ վազ-քո՜վ: Այնտեղ ծաղկած ուռենի կա, յուրաքանչյուրը բերում է ծաղկած ուռենուց մի փոքրիկ ճյուղ: Կրկնե՛լ:

Իմ սիրտը թպրտաց. դա և՛ վազքի ցանկությունից էր, և՛ նրանից, որ խաժ աչքերի բուլը կար մեր կողքին, և՛ այն բանից, որ արդեն գալիս էր, ուրեմն, դեղնականաչ փափուկ գարունը:

— Չե՛մ ուզում: Օտարին իմ խմբից հանե՛ք,— չոր, քարով քարի խփելու պես ասաց Մադաթը:

Նա դեմքը դանդաղ բարձրացրեց և շշնջաց շատ ավելի աչքերով, քան բերանով.

— Ի՞նչ օտար:

Մենք բոլորս կիսաշրջվեցինք ու նայեցինք Օտարին. նա զգաստ էր կանգնել, բայց ինձ թվաց, թե դարձյալ կծկված է իր Օտար անվան, իր հոր նվոցի, մոր միամիտ գողության տակ: Ադամախնձորը, նրա բարակ վզին, դանդաղ բարձրացավ, մնաց ու դանդաղ իջավ: Մենք բոլորս նայում էինք նրան, ուսուցչուհին նայում էր նրան և սպասում էր, թե ինչ կասի իր եղբոր որդին:

— Արտոն,— մրթմրթաց Մադաթը:

— Ի՞նչ Արտո:— Ուսուցչուհին նրանից սպասում էր այդ անվան լրիվ ու բարձրաձայն հնչումը, և ճիշտ տեղն էր ասելու՝ «եթե նրա անունը Օտար չլիներ՝ վրան գրված չէր լինի». դա կլիներ ամբողջ դպրոցում ամբողջ տարվա ամենասուր կատակը, բայց Օտարն այդ պահին, երբ ես խմբի ղեկավար էի և



աղջիկները նայում էին և արդեն-արդեն դեղնականաչ գարուն էր լինելու, ինձ այդ պահին Օտարը դուր էր գալիս, նրա կարմիր վերնաշապկի մասին ես բան չասացի:

— Արտավազդը,— մրթմրթաց Մադաթը. նա, միևնույն է, համաձայն չէր Օտարի այդ նոր անվան հետ:— Արտավա՛զդը,— չոր, քարով քարի խփելու պես ասաց նա,— թող լինի Արտավազդ, բայց միևնույն է՝ իմ խմբից հանի՛ր:

Ուսուցչուհին իր պողպատե հայացքը հառեց նրան, ուղղակի՝ դրեց իր ծանր հայացքը նրա վրա և ոչինչ չասաց, բայց շատ լավ հասկանալի էր, թե այդպիսով ինչ էր ասում նրան. ասում էր, որ ինքն այստեղ նրա հորաքույրը չէ, ինքը մաթեմատիկայի և ռազմագիտության ուսուցիչն է:

Մադաթը շփոթվեց, բայց նայում էր դարձյալ ուսուցչուհու երեսին. այնուամենայնիվ, նա նրա հորաքույրն էր և, բացի այդ էլ, Մադաթը համարձակ տղա էր:

— Հանեցե՛ք,— ինքն իրեն ուղղեց Մադաթը:— Բայց միևնույն է՝ հանեցե՛ք իմ խմբից:

— Ներեցե՛ք,— հեգնեց ուսուցչուհին,— իսկ քեզ ո՞վ ասաց, որ խմբի ղեկավարը դու ես:

Մադաթը նայեց խմբին, նայեց իրեն, խումբը նայեց նրան, և այդ այդպես էր՝ խմբի հրամանատարը նա էր: Նա նայեց ուսուցչուհուն, համառորեն նայեց ուսուցչուհուն և չասաց՝ «ես ասացի», բայց նաև չասաց՝ «ներողություն»: Ուսուցչուհին նայում էր նրան, նա նայում էր ուսուցչուհուն, և ոչ մի աքցանով նրա բերանից չէր հանվի ներողություն բառը: Եվ ուսուցչուհին տեսավ, որ այդ այդպես է՝ հրամանատարը նա է ու չի ուզում վերցնել Օտարին իր խումբը:

Ուսուցչուհին դանդաղ իջեցրեց իր ծանր կոպերը, մի քիչ մնաց այդպես աչքերը փակ ու դեմքը բարձր, և երբ ծանր կոպերը դանդաղ բարձրացրեց՝ արտասուքով լիքը հորաքույր էր, և շատ լավ երևում էր, որ զոհված իր եղբորը նա տեսնում էր նրա որդու մեջ: Մենք դա լավ էինք հասկանում, քանի որ այդ պահին այդ տղայի մեջ մենք ինքներս տեսնում էինք հրամանատարի ու հերոսի: Նա լավ հրամանատար էր. նա ուզում էր ունենալ այնպիսի ջոկատ, որի յուրաքանչյուր մարտիկը լիներ վստահելի վազող: Նա լավ ուսուցչուհի էր. նա ուզում էր իր մեջ միատեղել մեր բոլորիս ու յուրաքանչյուրիս սերը և ռազմական կարգապահությունը: Բայց այդ ինչպե՞ս է պատահում,

որ ես լավն եմ, նա լավն է, դու լավն ես, բոլորս լավն ենք, իսկ վատ բան այդուհանդերձ լինում է:

Գլուխը մի քիչ թեքած, վիզը բարակ, խոշոր աչքերը փայլուն՝ Ոտարը նայում էր դեպի հեռու լեռները և կարծես չէր շնչում: «Չի կարողանում վազել, ճանապարհին մնալու է, իմ խմբից հանեցե՛ք»,— լսեցի ես: Ոտարը թարթեց աչքերը: Միայն թարթեց աչքերը: «Չի կարողանում վազել, աղջիկների՛ մոտ թող մնա»,— լսեցի ես: Ոտարն անշարժ սպասում էր: Այդպես՝ նրա պես միայն գառն է թույլ տալիս խոսել իրեն մորթելու մասին, ջուրն է թույլ տալիս գովել իր համը կամ չհավանել իրեն, պայծառ արևածաղիկն է սպասում իր պոկվելուն կամ փրկվելուն: Վերնաշապիկի կարմիր ցոլքը նրան գեղեցկացրել էր: Իր մասին այդ հրամանատարի և ուսուցչուհու խոսակցության, մեր հայացքների, այդ կարմիր ցոլքի մեջ նա լուռ սպասում էր, և ինձ թվաց, որ ուսուցչուհուց էլ, այդ հերոսական հրամանատարից էլ, աղջիկներից էլ լավը նա է, և ամենաատորը ես եմ, որ ահա թույլ եմ տվել այդպես քուռակի պես նրան մեջ առնել ու զրուցել նրա վազքի անպիտանությունից ու ես ինքս էլ համապատասխան տառեր եմ հնարում նրա թիկունքին: Նա թուքը կուլ տվեց, նրա բարակ վզի ադամախնձորը բարձրացավ, մնաց ու դանդաղ իջավ, իմ բուկը նույնպես նեղացավ, ու ես տեսա, որ նրա փոխարեն խեղդվում եմ: Խեղդվում եմ այն բանի համար, որ իմ հայրն ահա նվում-նվում է ու չի մեռնում, որ իմ մորն ահա հին պաստառ են տվել և դա նման է գողության, որ պատահականությունը ճիշտ իմ մեջքին է դաջել իմ Ոտար անունը, որ այս ուժեղ աշխարհում միայն իմ ուժն է քիչ:

— Մադաթը թող գա երկրորդ ջոկատ, ես գնամ առաջին,— ասացի ես:

Ուսուցչուհին չլսելու տվեց:

— Մադաթը թող գա երկ…

Ուսուցչուհին կտրուկ նայեց ինձ: «Չեք ուզում՝ չեմ…» — մտածեցի ես, բայց նույն պահին էլ հասկացա, որ նա ինձնից պահանջում է ռազմագիտությանն ու իրեն վայել դիմելաձև:

— Թո՛ւյլ տվեք դիմել:— Ես մի քայլ առաջ գնացի, կանգնեցի զգաստ և առաջարկեցի.— Մադաթին թո՛ւյլ տվեք գալ երկրորդ ջոկատ, ինձ՝ գնալ առաջին:

Նա շշուկով հարցրեց.

— Ինչպե՞ս:

Ես կրկնեցի.

— Ինձ կարգադրեք տեղափոխվել առաջի՛ն ջոկատ, Մադաթին՝ երկրո՛րդ,— և ասացի Մադաթին.— Քանի որ չես ուզում Արտավազդի հետ նույն խմբում լինել՝ արի՛ խմբներս փոխենք:

Նա սառնությամբ, մի տեսակ՝ չտեսնելով, նայեց ինձ ու հայացքը թեքեց: Ես շփոթվեցի: Ես հասկացա նրա սառնության պատճառը և ավելի շփոթվեցի. նա՝ № 1 ինքը № 2 ինձնից էր բարձրահասակ, նրա 3-ը, 5-ը, 7-ը, 9-ը, 11-ը, 13-ը, իմ 4-6-8-10 -12-14-ից էին բարձրահասակ. նրանը, այդպիսով, բարձրահասակների խումբ էր, իսկ ես նրան առաջարկել էի վերցնել ցածրահասակների իմ խումբը: Նա, ազնիվ խոսք, լավ զորավար էր: «Հաննիբալ», մտածեցի ես, «Սուվորով… Կուտուզով… Հասան-խան… քո անունը եթե Հասան-խան չդնեմ», այնինչ նրա անունը հենց նրա վրա էր՝ Մադաթով, գեներալ-գնդապետ Մադաթով: «Քո անունը եթե գեներալ-մայոր Մադաթով չըդարձավ…»

— Փոփոխում չի լինելու,— ասաց ուսուցչուհին:— Առաջին շարք, գետն ի վեր մինչև Տաք աղբյուր ու ետ՝ վազ-քո՜վ:

— Ո՛չ,— չոր, քարով քարի խփելու պես ասաց նա,— Ոտարին հանեք իմ ջոկատից:

— Ի՞նչ Ոտար,— ծղրտաց ուսուցչուհին:

— Դուք գիտեք,— ասաց նա:

— Իսկ ո՞վ ասաց, որ ջոկատը քոնն է,— ծղրտաց ուսուցչուհին:

— Այդպես է,— ասաց նա:

— Իսկ եթե քեզ գցեմ փայտանոց ու դուռը վրադ կողպե՞մ,— ծղրտաց ուսուցչուհին:

Նա մի պահ ճռճվեց, շարքից դուրս եկավ ու գընաց դեպի փայտանոց:

— Ե՛տ արի,— ծղրտաց ուսուցչուհին:

Նա ետ չնայեց:

— Գցեք փայտանոց ու դուռը վրաս կողպեք,— լսվեց նրա ձայնը: Նա գնում էր, հեռանում էր, արդեն իջնում էր նկուղի աստիճանները, նրա կեսն արդեն մթան մեջ էր: Այդպես հեռացել էր, այդպես զոհվելու էր գնացել նրա հայրը և չէր վերադառնալու, էլ երբեք չէր գալու:

— Ե՛տ արի,— խնդրեց ուսուցչուհին:

Աստիճանների վրա նա կանգ էր առել, երևում էր նրա միայն գլուխը, բայց ետ չէր դառնում: Կիջնե՞ր կամ կբարձրանա՞ր: Կիջնե՛ր: Երևում էր նրա միայն գլուխը: Նրա հորաքույրը հայացքը շրջեց, որպեսզի չտեսներ նրա իջնելը, անհետանալը:

— Բոլորը քո՛ պատճառով,— լսեցի ես:

Բոլորը նախատինքով նայում էին Ոտարին. հիմա, երբ բոլորը նախատինքով նայում էին իրեն, նա չէր համարձակվում մտածել հայացքը հեռուներին պահած, որ ինքը մեղավոր չէ. նա կուչ էր եկել հենց մեղավորի պես և վախենում էր երևացնել բողոքի իր միակ խեղճ նշանը՝ ադամախնձորի վերուվարումը: Իսկ Մադաթը շուռ էր եկել ու բարձրանում էր նկուղի աստիճանները՝ մեկ աստիճան, երկու աստիճան, կանգ առավ, երեք աստիճան. դանդաղ բարձրանում էր դեպի գեներալություն, գեներալ-մայորություն: Նա ինձ սաստիկ դուր չեկավ, և հիմա, երբ բոլորը

նախատինքով Օտարին էին նայում և Օտարն ինքն էլ իրեն համարում էր մեղավոր, զուտ այն պատճառով, որ Մադաթն ինձ դուր չեկավ, ես կարողացա հասկանալ, որ մեղվորը Օտարը չէ, որ եթե ճագարը շան առջև կուչ է գալիս, չի նշանակում, թե ճագարը մեղավոր է:

Ո՛չ զղջում, ո՛չ բան. եկավ ազատ-անկախ կանգնեց իր տեղը շարքի առջևում և հանգիստ ասաց.

— Խնդրում եմ հանեք:

— Ինչո՞ւ:

— Լավ չի վազում:

— Այո՛,— ասաց ուսուցչուհին:

— «Այո», դե ուրեմն հանեք: Նա մեզ հետ չի կարող վազել, ջոկատը նրա պատճառով ետ է մնալու: Մենք չենք կարող նրա պես դանդաղ գնալ:

Այդ այդպես էր և միայն այդպես էր: Բայց ես չեմ հասկանում, ոչ մի կերպ չեմ կարողանում հասկանալ, թե ինչպես կարելի է կանգնել թույլի դեմ և ասել, որ նա թույլ է, նրա ծնկները ծալվում են, վազքի համար նա պիտանի չէ:

— Դուք չեք ուզում նրա պես դանդաղ գնալ, նա չի կարող ձեզ հետ վազել, հասկանալի է,— ասաց ուսուցչուհին,— բայց հանեմ ի՞նչ անեմ:

Մադաթը չպատասխանեց, իշխանաբար թեք նայեց խմբին ու արհամարհոտ հայացքը գամեց Օտարին, քիչ էր մնում նրան պարզապես շարքից դուրս գալ հրամայեր: Դա ինձ դուր չեկավ:

— Դու դարձյալ քո՞նն ես պնդում,— ասաց ուսուցչուհին: Ինձ այդ էլ դուր չեկավ. ուսուցչուհին կարծես թե գոհ էր այն բանի համար, որ այդ Մադաթը ուներ իր կարծիքը և պինդ կանգնած էր իր կարծիքին: Ուսուցչուհին ինձ դարձավ.— Իսկ դո՞ւ:

Քամին սուրում է, արծիվը ճախրում է, ջրվեժը նետվում է, ձայնը թռչում է, հորթը քամու հետ սլանում է— վազքից թեթև բա՞ն: Ես ուզում էի ասել՝ «Արտավազդին փոխեք իմ 7-րդի հետ», ես արդեն արդեն ասում էի, բայց ես տեսա, որ դա հենց Մադաթի ուզածն է: Իսկ նա չէր թաքցնում, որ իր ուզածըն այդ է: Նրա հայացքն ու կեցվածքը բաց անամոթությամբ ասում էին, որ ինքը կհաղթի ինձ, իր ջոկատը կհաղթի իմ ջոկատին, որ դասարանի ամենաթույլ վազորդին նա այդպես կպարտադրի ինձ և ահա այդպես՝ կեղտոտ ձյունը զոռով բերան խցկելու պես իմ բերանը կխցկի իր հաղթանակը:

— Ես ի՞նչ,— ասացի ես:

— Արտավազդին եթե բերենք քո խո՞ւմբը:

— Օրինակ, էդ ինչո՞ւ եք փոխում,— փնթփնթացի ես,— ոնց որ է՝ թող էնպես էլ մնա:

Նա շշնջաց.

— Զգա՛ստ: Սա ձեր տունը չէ, ես էլ քո մայրը չեմ:

«Ոչ էլ՝ հորաքույրը», մտածեցի ես, այնինչ նա ինձնից սպասում էր ավելի լրիվ ու որոշակի պատասխան:

— Թույլ է, չի կարող վազել,— ասացի ես:

Դա իհարկե ստորություն էր, բայց ես ինչպե՞ս լինեի միաժամանակ և՛ վրեժխնդիր, և՛ մաքուր:

— Քիչ առաջ դու համաձայն էիր,— ասաց ուսուցչուհին:

Ես նրան ինչպե՞ս բացատրեի, թե քիչ առաջ ինչու էի համաձայն և ինչու համաձայն չեմ հիմա:

— Հիմա համաձայն չեմ,— ասացի ես:

— Ինչո՞ւ:

— Այդպես է,— ասացի ես և ինձ դուր չեկա: Չսիրվելը ծանր բան է, ես հայացքս փախցրի:

(Շարունակելի)

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



 ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## ՆՈՐԻՑ ԳԱՐՈՒՆ Է

Հովը շոյում է մեր գարնանացան
Արտերը ծլած,
Խենթացած առուն փախչում է հեռու
Ափերից ելած:
Գառնուկն է մայում, դժվար է նրան
Բաժանվել մորից.
Ոչխարի հոտն է մուշ-մուշ արածում,
Գարուն է նորից:
Երկինքն է ժպտում մանկական անմեղ
Աչքերով զուլալ,
Զարթնել է վազը, ուրախությունից
Սկսում է լալ:
Եվ ծիծաղում են մանուշակները
Մոտակա ձորից,
Ծաղկոտ ոտքերով գարունը մտավ
Մեր գյուղը նորից:

ՄԱԳԴԱԼԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Լենինական, № 22 դպր. 7-րդ դաս. աշ.)

— Ինչ, համարը Սոնայի՞ն է հասցեագրված,— այնպիսի զարմանքով ծղրտաց Ժիրայրը, կարծես թե «Նետ» թերթի հերթական համարը լույս էր տեսել առանց իր ծաղրանկարի:

— Մի տես է՜, հետո էլ ասում են 13-ը դժբախտ թիվ է,— քրթմնջաց Լող-լող Աշոտը, որ ակտիվիստի իր հեղինակությունը պահպանում է՝ տարին երկու անգամ մասնակցելով բասկետբոլի մրցումներին:

— Կարմիր անկյունը մի հասցեով էլ հարստացավ,— սրտանց ուրախացավ Աիդան: Նա դպրոցի կոմերիտմիության քարտուղարն է և իր ուզբեկ ընկերուհուն իր բարեկամությունը ապացուցելու համար երկու տարի է՝ դասամիջոցներին ձեռքից վայր չի դնում ռուս-ուզբեկական բառարանը:

Իսկ Սեդան ոչինչ չասաց, սակայն ի՞նչը կարող էր ավելի վիրավորական լինել, քան այն, որ լռում էր դպրոցի № 1 շատախոսը:

Սոնան անխոս վերցրեց ծրարը, կարդաց հետադարձ հասցեն. Կիև, № 12 դպրոց, Վասյա Դեմչենկո: Նա դեռ երբեք նամակ չէր ստացել: Անգամ տղաները, որ որոշ դասերի, Սոնայի կարծիքով, ներկա են լինում աղջիկներին հեգնական երկտողեր գրելու համար, նրան չէին նկատում: Մի անգամ միայն այդ նույն Ժիրայրը, որ հիմա շրթունքները ծռելով իրեն ուտում է զարմանքից, հացի միջուկի հետ (ի՞նչ պրիմիտիվ ձև) ինչ-որ բան շպրտեց: Հակառակի պես ուսուցիչը նկատեց, ընդհատեց դասը (կարծես Երրորդ համաշխարհայինն էր սկսվել) և երկտողը փոխանակ Սոնային տալու, տարավ... դիրեկտորի մոտ: Հետո այդ հիմար Ժիրիկին անշնորհք արարքի համար մեղադրելու փոխարեն, հրապարակեցին հասցեատիրոջը չհասած, վիրավորական բովանդակություն ունեցող նամակը:

Իսկ այժմ ինքն ստացել է մի իսկական նամակ, այսինքն՝ ոչ թե ինքը, այլ դասամատյանի 13-րդ համարը: Նա այնպես խնամքով ծրարը դրեց պայուսակի մեջ, ինչպես պատմության ուսուցիչն է հին աշխարհի քարտեզները ուսուցչանոցից բերում դասարան:

— Գուցե կարդայի՞նք,— անհամարձակ հարցրեց Նարինեն:

— Ազնի՛վ խոսք, աղջիկնե՛ր, ինձ բոլորովին չի հետաքրքրում, բայց...— Վարդուհին էր. նա այնքան շատ է «ազնիվ խոսք» ասում, որ այլևս ոչ ոք չի

 ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



հալածում նրա «ակտիվ խումբին»:

— Կարծես դասարանում մի 13 համար կա, և նամակն էլ նրան է ուղղված,—չոր նետեց Սոնան:

Աղջիկները լավ գիտեն, որ երբ նա դիմում է եզակի երրորդ դեմքին, նրան հանգիստ պետք է թողնել: Եվ առհասարակ ո՞վ է մի լավ բան տեսել այդ եսասերից, որ նստում է առաջին նստարանին ու երբեք չի օգնում ընկերոջը, չի հանում նեղ վիճակից: Սոնան գիտի, որ իրեն եսասեր են համարում: Թող համարեն, թող հաստատ մնան իրենց կարծիքին:

Դպրոցից տուն ճանապարհը նույնքան երկար թվաց, ինչքան աշխարհագրության դասը: Սոնան շնչասպառ բացեց ծրարը. «Սիրելի ընկեր(ուհի), մեր դպրոցում ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ պատրաստում ենք Հայաստանին նվիրված ցուցափեղկ: Այդ նախաձեռնությունը առավել սիրելի է, որովհետև 1943 թվականին, մեր դպրոցի շենքը, որ գերմանացիների շտաբն էր, ֆաշիստներից մաքրել է մի հայ լեյտենանտ՝ իր վաշտով: Այդ լեյտենանտը Ձեր համագյուղացի Արամայիս Ավագյանն է եղել: Այժմ մեր պիոներական դրուժինան կրում է նրա անունը: Խնդրում եմ ձեր դասարանի օգնությամբ հավաքեք և ուղարկեք անհրաժեշտ նյութեր: Իսկ նամակը հատկապես Ձեզ եմ ուղարկել, որովհետև ես էլ 13 համար եմ և գիտեմ, թե ինչպես նամակագրական կապեր հաստատելիս 12 համարից թռչում են 14-ը, կարծես 13 համար գոյություն չունի: Բարեկամական լավագույն մաղթանքներով՝ Վասյա Դեմչենկո»:

Սոնան երկու օր քրքրեց գրադարանները, հանդիպեց Ավագյանների ընտանիքին, զրուցեց, նյութեր հավաքեց: Երկրորդ օրը նա մտավ փոստատուն: Կիս ուղարկվող հսկա ծրարի վրա խոշոր տառերով գրված էր հետադարձ հասցեն՝ 9-րդ ա դաս. աշակերտների կողմից:

*ԱՆԱՀԻՏ ԱՆԱՆՅԱՆ*
*(Նոյեմբերյանի շրջան, Կողբի միջն. դպր. 9-րդ դաս. աշ.)*

## ՊԱՏԱՆԻ ՆԿԱՐԻՉԸ

Նորիկը սովորում է Ալ. Մյասնիկյանի անվան № 66 դպրոցում, 7-րդ դասարանցի է, գերազանցիկ: Մայիս-հունիս ամիսներին դպրոցի լայնարձակ միջանցքում բացվել էր նրա ստեղծագործությունների ցուցահանդեսը. Ներկայացրել էր 76 գործ՝ դիմանկարներ, բնանկարներ, հեքիաթների նկարազարդումներ, թեմատիկ աշխատանքներ և այլն: Շատերն իմացան այդ ցուցահանդեսի մասին՝ եկան, տեսան, հավանեցին: Չանցած մի քանի օր, Նորիկի նկարները ցուցադրեցին հեռուստատեսությամբ:



Եթերային ու ռոմանտիկ չեն Նորիկի գործերը, այլ՝ ավելի շատ իրական-առարկայական, երբեմն և՝ առօրեական: Նկարում է այն, ինչ տեսնում է և նկարում է այնպես, ինչպես տեսնում է: «Աշնանային եղանակ», «Արարատյան դաշտը», «Սևանի կղզին», «Ջունգլի», «Տատի դիմանկարը», «Մոր դիմանկարը», ինքնադիմանկարներ, բազմաթիվ նատյուրմորտներ. այս բոլոր նկարների մեջ Նորիկը կարողացել է ընտեղծել իր աշխարհընկալմանը բնորոշ հետաքրքիր պատկերներ: Իսկ «Սուտլիկ որսկանը», «Բարիկենդանը», և մի քանի այլ հեքիաթների նկարազարդումները աչքի են ընկնում կատականկարներին բնորոշ աշխուժությամբ և վառ գունագեղությամբ:

Երկրորդ դասարանից սկսած՝ Նորիկը հաճախում է պիոներների պալատի գեղանկարչության խմբի պարապմունքներին: Ուսուցիչների ձեռքի տակ աստիճանաբար աճել ու հասունացել է նա, ծանոթացել գեղանկարչության հայ և համաշխարհային վարպետների աշխատանքներին, սովորել է տարբերել լավն ու վատը, ինքնուրույն ընտրություն կատարել:

Նրա աշխատանքները պարբերաբար ցուցադրվել են պիոներների պալատի նկարչական խմբակի ցուցահանդեսներում, իսկ վերջերս նրա վեց աշխատանքները տեղ գտան նաև մանկական պատկերասրահում:

Նորիկը դեռևս դպրոց գնալուց շատ առաջ նկարել էր իր բնին շղթայված մի շուն և ահա, առաջին գործին այսօր ավելանում է 501-րդը՝ վերջին աշխատանքը՝ մրգերով նատյուրմորտը: Դեռ ինչքա՜ն նկարներ կստեղծի Նորիկը, բայց բանը քանակի ու թվերի մեջ չէ, կարևորն այն է, որ տարեցտարի հասունանում, ամբողջանում է շնորհալի պատանին և այսօրվանից արդեն մտածում է իր հետագա ուսումը շարունակել այդ ճանապարհով:



*Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*

# Ա Ճ Ա Ռ Յ Ա Ն Ի  Հ Ե Տ

*ԳԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ*

«Արմատական բառարանի» շարվածքը կանոնավոր առաջ էր ընթանում: Որոշ լեզուների տառեր չունեինք, ինչպես՝ ասորերեն, չինարեն, ճապոներեն և այլն, դրանց փոխարեն դրվում էին լատիներեն համապատասխան հնչյունը: Բայց պատահում էր, որ պետք էր լինում բառի պատկերը պահել, երբ այն գաղափարագիր էր: Այդ դեպքում հարկադրված մոտավոր նմանությամբ սարքում էի, խարտոցելով, իրար միացնելով տարբեր տառեր: Նման մի գաղափարագիր էր պահանջում պահլավերեն «մահիկ» բառը: Ես այն պատրաստեցի արաբերեն մի քանի տառեր կտրտելով և իրար կպցնելով: Չգիտեմ ինչ ստացվեց, բայց Աճառյանը շատ հավանեց: Մի առավոտ սրբագրությունները հանձնելիս նկատեցի, որ հետն էլ ինչ-որ ծրար կա:

— Սա ի՞նչ է, պրոֆեսո՛ր,— հարցրի:

— Փող է, 100 ռ.:

— Ինչի՞ համար:

— Ծախսի՛ր, կարիք կունենաս:

— Կարիք չունեմ,— ասացի ու դրի սեղանին: Պնդեց: Չվերցրի:

— Պարտքով եմ տալիս, հետո երբ ունենաս, կվերադարձնես:

— Երբ կարիք ունենամ, այն ժամանակ պարտքով կվերցնեմ,— ասացի:

— Կենտրոնական վարժարանում երգենկացի մի դասընկեր ունեի: Նա էլ այդպես էր,— ասաց, փողը վերցրեց:

Մի օր էլ հարցրեց.

— Դու համալսարանի լեզվագրական բաժնում ես սովորում, չէ՞:

— Այո՛,— պատասխանեցի:

— Լեզվաբանությունը սիրո՞ւմ ես:

— Այո՛,— ասացի:

— Ուրեմն կցանկանա՞ս ունենալ «Արմատական բառարանը»:

— Իհարկե ցանկանում եմ, բայց ինչպե՞ս:

— Թանկ է և սպառված: Առաջին հատորներից բոլորովին չի մնացել, վերջին հատորներից մի քանի օրինակ պահել են՝ արտասահման ուղարկելու համար: Ուրեմն պիտի մտածենք ձրի ստանալու մասին:

— Վեց հատո՞րն էլ:

— Վեց հատորն էլ:

— Չեմ հասկանում:

— Որ բացատրեմ կհասկանաս: Գիշերը մտածել եմ և գտել եմ միջոցը:

«Արմատական բառարանն» ունենալու գաղափարը խանդավառեց ինձ: Առհասարակ գրքերի մոլի էի, ևահա գրքերի գիրքը՝ «Արմատականը» ձեռք բերելու մասին էր խոսվում:

— Հնարավո՞ր է,— հարցրի ուրախ:

— Կարծում եմ հնարավոր է, վաղը ավելի որոշակի կասեմ:

Այդ օրը համալսարանում բոլոր ընկերներս գիտեին, որ ես «Արմատական բառարան» եմ ունենալու: Բարի նախանձով էին նայում: Ամենից շատ Էդուարդ Աղայանն էր հետաքրքրվում ու հարցնում, թե ի՞նչ ճանապարհով եմ ստանալու: Նա դա համարում էր անհնարին: 9000 էջանոց ապակետիպ հազվագյուտ նման մի գիրք ձեռք բերելը հրաշք է, ասում էր: Նույնիսկ ունեցողները միանգամից չեն գնել, տասը տարվա ընթացքում մաս-մաս վճարելով վերցրել են, հավաքել, կազմել տվել:

Լսարանում երկար քննարկեցինք հարցը, ամեն մեկը իր կարծիքն էր հայտնում: Մեկն ասում էր, թե երևի Աճառյանը մի ավելորդ օրինակ ունի, ցանկանում է նվիրել: Մյուսն ասում էր, թե գուցե մեկնումեկը էժան ծախելու է, Աճառյանը պիտի գնի և նվիրի: Այսպես անվերջ:

Հաջորդ օրը նա ուրախ-ուրախ ասաց.

— Գործը գլուխ եկավ, գնանք:

— Ո՞ւր:

— Մելքոնյան ֆոնդի գրասենյակը՝ պրոֆ. Հ. Հակոբյանի մոտ:

«Արմատական բառարանը» տպագրվում էր Մելքոնյան ֆոնդի հրատարակությամբ: Նրանց գրասենյակը գտնվում էր Կուլտուրայի տանը, այժմյան գրականության և արվեստի թանգարանի թատերական բաժնի տեղում:

Պրոֆ. Հակոբյանը մեզ ընդունեց սիրով, աթոռ առաջարկեց: Նա ինձ ճանաչում էր վաղուց: Կանչեց փոքրիկ աչքերով, ժպտադեմ մի երիտասարդի, կարծեմ անունը Խաչիկ էր, ասաց.

— Ընկերոջը տար պահե՛ստ, թող ջոկի «Արմատական բառարանի» մամուլները:

Խաչիկի հետ միասին գնացինք պահեստ: Բաց արեց դուռը, ասաց.

— Ջոկի՛ր: Սրանք ավելորդ մամուլներն են, ոչ մի հատոր լրիվ դուրս չի գա, հնարավոր է, որ 9000 էջից մի 300-ը պակաս լինի, ոչինչ, յուրաքանչյուր հատորում 50—100 էջ:

Նոր միայն հասկացա, թե ի՞նչ ճանապարհով էի ունենալու բառարանը: Պետք պիտի լիներ պակաս էջերը արտագրել նույնությամբ, ինչպես արտագրել էր Աճառյանը ապակետիպով բազմացնելու համար:

Հայացքս գցեցի մինչև առաստաղ հասնող թղթի դեզերի վրա: Զհուսահատվեցի: Ես ունենալու էի աշխարհիս ամենահետաքրքիր բառարաններից մե-

Սկիզբը՝ №№ 1, 2

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# «ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ԱՅԳԻՆ»

Նորոգողներն ուշանում էին, և 96-րդ դպրոցի աշակերտները որոշեցին իրենց ձեռքով իրենց դպրոցի շենքը նախապատրաստել ձմռանը: Նրանցից շատերը առաջին անգամ էին մուրճից, սղոցից, ներկարարի վրձնից ու այլ գործիքներից օգտվում և ավելի շատ մուրճով իրենց մատներին էին հարվածում, քան մեխին: Բայց և այնպես գործը առաջ էր գնում: Մինչև ցրտերն ընկնելը հասցրին փոխել և վերանորոգել մի քանի դուռ ու պատուհան, ծեփել քանդված պատերը:

Վերանորոգման բրիգադի աշխատանքը հավանության արժանացավ: Գարնանը նրանք ձեռնարկեցին նորոգել դպրոցի շենքը: Ուսուցիչները օգնում էին աշակերտներին ու խորհուրդներ տալիս: Երկու-երեք ամսվա ընթացքում մոտ հինգ հազար ռուբլու վերանորոգման աշխատանք կատարվեց:

Գրադարանում փոքր դարակներ էին դրված, և եղած գրականությունը հնարավոր չէր կարգին դասավորել: Դիրեկտորը խոստացած շինանյութը հայթայթեց, իսկ Գրիգորը, Սամվելը, Երվանդն ու բրիգադի մյուս անդամները հարմարավետ գրադարակներ պատրաստեցին:

Այս ուսումնական տարվա ընկզբին նրանք ո՛չ ռազմագիտության դասասենյակ ունեին, ո՛չ էլ գույքի պահեստ: Վերանորոգման բրիգադի ջանքերով ունեցան թե՛ մեկը, թե՛ մյուսը:

Դպրոցում նստարաններ, աթոռներ, սեղաններ, դռներ ու պատեր փչացնող աշակերտների թիվը գնալով նվազում է, որովհետև իրենց փչացրածները նորոգելուց հետո, նրանք արդեն խնամքով են վերաբերվում այդ գույքի հետ:

Նախատեսվել է նաև ծառապատել դպրոցամերձ հողամասը, որին արդեն կմասնակցեն բոլոր դասարանների աշակերտները: Հողամասից յուրաքանչյուր ջոկատի մի կտոր է հատկացված՝ քսան մրգատու և տասը ո՛չ պտղատու ծառ տնկելու համար: Ջոկատի անդամները խնամելու են իրենց տնկած ծառերը, մինչև դպրոցն ավարտելը, որից հետո հերթափոխը հանձնելու են առաջին դասարանցիներին: Տնկարանը դեռ նոր է և արդեն իր անվանումն ունի՝ «Սերունդների այգի»:

ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ

---

կը, որի մասին ֆրանսիացի ականավոր լեզվաբան Ա. Մեյեն ասել էր. «Ոչ մի լեզվի համար չկա այսքան նոր, այսքան կատարյալ ստուգաբանական բառարան»: Այս տողերը կարդացել էի իմ շարելիք հատորի վերջին էջերում:

Գործի անցա: Տաժանելի աշխատանք էր: Տարիների փոշու տակ թաղված տասնյակ հազարավոր մամուլներ պետք է աչքի անցկացնեի, վերցնեի մեկ-մեկ հատ: Թե՛ աշխատում էի, թե՛ սովորում, ե՞րբ էի անելու այս գործը: Տպարանից վերցրի ինձ հասանելիք արձակուրդը, որոշ դասերից էլ բացակայում էի: Պատահում էր, որ վաղ առավոտյան մտնում էի պահեստ, այնտեղ մնում մինչև երեկո, ցերեկը մի կտոր հաց ու պանրով գոհանում: Որքան մեծանում էր իմ ջոկած մամուլների թիվը, այնքան մեծանում էր ուրախությունս, կարծես գանձեր էին, որ շարվում էին առաջս:

Երբ բոլորը նայեցի, ընտրածս մամուլները կապեցի պարանով, շալակեցի ու մեծ դժվարությամբ տարա կոնդ, թափեցի հատակին, վերջնականապես դասավորեցի, առաջին հատորից 160 էջ էր պակասում, մյուս հատորներից՝ ավելի քիչ, ընդամենը պետք էր արտագրել 650 էջ:

Աշխատանքիս արդյունքը զեկուցեցի Աճառյանին: Նա գոհ մնաց: Նորից միասին գնացինք Հովհ. Հակոբյանի մոտ, այս անգամ այլ խնդրանքով, այն ժամանակ հեռախոս չկար, որ զանգահարելով գործը վերջանար: Ամեն ինչ ուրքով էր... Աճառյանը այս անգամ էլ խնդրեց 100 թերթ մաքուր թուղթ, որպեսզի դնենք պակաս տեղերը, հետո կամացկամաց արտագրեմ:

Այդ էլ եղավ: Իմ սուղ միջոցներով կազմել տըվեցի բառարանի 6 հատորները՝ յուրաքանչյուրը բաժանելով 2 մասի: Ստացվեց 12 գեղեցիկ հատոր:

Սկզբում արտագրում էի Աճառյանի տանը, նրա անձնական օրինակից, ինքն էլ մեկ-մեկ հետևում էր, խորհուրդներ տալիս: Անծանոթ լեզուների տառերը գրեթե նկարում էի: Հետո երկուսս էլ համոզվեցինք, որ այդ ձևով տարիներ պիտի տևի իմ աշխատանքը:

— Ես քեզ համար կճարեմ մի օրինակ, կարտագրես, կվերադարձնես,— ասաց մի օր: Շատ ուրախացա: Հիմա տանն էլ կարող էի արտագրել:

Կատարեց խոստումը: Հրատարակչությունից ժամանակավոր օգտագործման համար վերցրեց «Արմատական բառարանի» առաջին հատորը, հանձնեց ինձ: Արտագրում էի սև տուշով, ամեն կերպ աշխատելով նմանվել բնագրին, որքան այդ հնարավոր էր:

Մի օր էլ համալսարանում արտագրեցի՝ ազատ ժամերիս: Տեսավ Աճառյանը.

— Եզան աշխատանք է, ծանր, հոգեմաշ, այսպիսի աշխատանք մեկ ես կանեմ, մեկ էլ դու:

Հպարտ էի այդ գնահատականի համար, ավելի հպարտ, որ վերջապես ունենալու եմ «Արմատական բառարանը»: Աշխարհում 400 հոգի ուներ այդ բառարանից, մեկը ես էի, և այդ՝ շնորհիվ Հրաչյա Աճառյանի. կարո՞ղ էի դրանից ավելի թանկագին նվեր պատկերացնել:

*(Շարունակելի)*

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐԻ ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԻՆՔՆԱՀԱՎԱՆ ԱՔԼՈՐԸ

Աքլորին հարցրել են.

— Ինչո՞ւ ես գիշերվա կեսին



ամեն անգամ «ծուղրուղու» կանչում, մարդկանց քունը խանգարում:

Աքլորն ասել է.

— Որ ես չկանչեմ՝ լույսը չի բացվի:

## ԿԱՏՈՒՆ ՈՒ ՄՈՒԿԸ



Կատուն մկանն ասել է.

— Քո բնից դո՛ւրս արի, մտիր ա՛յս բունը, քեզ հարյուր ռուբլի վարձ տամ:

Մուկը պատասխանել է.

— Տարածությունը՝ կարճ, վարձը՝ շատ, այստեղ անպայման մի դավադրություն կա:



## ՄՐՏՈՏ ԳՈՐՏԸ

Գյուղացին սայլով դաշտից խոտ էր բերում: Հանկարծ մի գորտ ընկավ անիվի տակ և ջարդուփշուր եղավ: Չորս կողմից հավաքվեցին հարևան ու ազգական գորտերը և իրենց ցավակցությունը հայտնեցին տուժած ցեղակցին, իսկ ավելի համարձակները՝ սպառնացին վրեժխնդիր լինել:

— Դուք անհո՜գ եղեք,— ասաց ջախջախված ու շնչասպառ գորտը,— ես էլ պարտքի տակ չմնացի, թե սայլն ինձ այս օրը գցեց, ես էլ նրա անիվը մի լավ ճանկռեցի...



## ԱՂՎԵՍՆ ՈՒ ԳԱՅԼԸ

Աղվեսը, դունչը տնկած, ծտերի ետևից էր ընկել:

Հանկարծ գլորվում է մի փոսի մեջ: Դես է թռչում, դեն է թռչում, չի կարողանում դուրս գալ: Դիմացից մի գայլ է գալիս:

Աղվեսն ասում է.

— Գա՛յլ եղբայր, այստեղ մի կտոր պանիր կա, արի՛ միասին ուտենք:

Գայլը շատ քաղցած էր. իրեն նետում է փոսի մեջ: Աղվեսը ցատկում է գայլի մեջքին ու դուրս է գալիս: Գայլը դես է թռչում, դեն է թռչում, չի կարողանում դուրս գալ:

Աղվեսը վերևից ասում է.

— Է՜, գա՛յլ եղբայր, ես դեսն էլ եմ թռել, դենն էլ:

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*



## ԿԱՏՎԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Կատվին լուր բերին թե՝ «Մըկները քեզ իրենց վրա թագավոր են կարգել»: Նա տխրեց: Երբ պատճառը հարցրին, ասաց. «Վախենում եմ, որ փոշմանեն»:



## ՊՈՒՂՈՒ ԹԱՌ ՆՎԱԳԵԼԸ

Պուղին մի օր թառ էր նվագում, իսկ կինը լսում էր: Տեսնելով, որ Պուղին թառի կոթը ամուր բռնել է և ձեռքը բոլորովին չի շարժում, կինն ասում է.

— Ուրիշ թառ նվագողներ իրենց ձեռը թառի վրա վեր ու վար են անում, իսկ դու ձեռդ մի տեղ բռնել ու պահել ես:

Պուղին պատասխանում է.

— Նրանք տեղը չգիտեն, ձեռով վեր ու վար են անում, որ գտնեն, իսկ ես տեղը լավ գիտեմ, դրա համար էլ ձեռքս չեմ շարժում:

# Մ Ա Գ Ն Ի Ս

### 3. ԱՄԵՆ ԻՆՉ ՍԿՍՎԵՑ ՍՌԱՋԻՆ ՀԻՎԱՆԴԻ ԲՈՒԺՈՒՄԻՑ

*Վկայություններ կան, որ դեռ շատ վաղուց հնդիկները, արաբները, չինացիք և հրեաները մագնիսն օգտագործել են որպես դեղամիջոց, համայիլ (հուռութք), երիտասարդությունը պահպանելու և նյարդերը հանգստացնելու միջոց: Մեր թվարկությունից հինգ հարյուր տարի առաջ նշանավոր հնդիկ վիրաբույժ Սուսրութան մագնիսի օգնությամբ կատարում էր աչքի վիրահատում:*

*Դիոսկորիդը (մ. թ. 1-ին դար) նշում է, որ մելամաղձոտությունը ցրելու համար մարդիկ իրենց վրա մագնիս էին կրում:*

*Ֆրանսիացի փիլիսոփա, բժիշկ Մարցելլան (մ. թ. 4-րդ դար) խորհուրդ էր տալիս գլխացավի ժամանակ հագնել մագնիսային մանյակ:*

*Ավիցեննան (11-րդ դար) մագնիսով բուժել է փայծաղի զանազան հիվանդություններ: Ալբերտ Մեծը (13-րդ դար) գտնում էր, որ ձախ դաստակի վրա մագնիս կրելու դեպքում մարդը խույս է տալիս գիշերային մղձավանջներից և ազատվում խելացնորությունից:*

*16-րդ դարի սկզբներից մագ-*

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱԿՈՒՄԲ

ԻՆՉՈՒ

ԻՆՉՊԵ՞Ս ԵՐԲ՞ ՈՐՏԵ՞Ղ

ԻՆՉՊԵ՞Ս ԵՐԲ՞ ՈՐՏԵ՞Ղ

*նիսը գրեթե ամենուր սկսեց օգտագործվել որպես նյարդային հիվանդությունների բուժման միջոց: Այդ ժամանակաշրջանի հայտնի գիտնականներից մեկը՝ Պարացելսը մագնիսի բևեռներն*

*Սկիզբը՝ № № 2, 3։*

# ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ՁՅԱՆ ՍԱՀՄԱՆՈՒՄ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Ձանել ժամանակս զբաղվում էի նաև քարայծի որսով: Իմ որսի վայրերն էին ժայռոտ ու խանձված լեռների այն մեծ ու փոքր շղթաները, որոնք Ազատ գետից ձգվում են դեպի արևելք, դեպի Վեդի, Նախիջևան, Ջուղա: Բուսականությունից աղքատ այդ քարքարոտ վայրերում մի ժամանակ քարայծերը շրջում էին մեծ ու փոքր հոտերով: Ամառը բարձունքներում էին արածում, ուշ աշնանը իջնում էին ներքին բլուրներն ու դեպի Արաքսի հովիտը ձգվող ձորակները:

Ինձ համար մեծ բավականություն էր այդ գեղեցիկ կենդանիների կյանքը դիտելը: Եվ անպայման թաքստոցից. շատ զգույշ են, հենց վտանգ զգացին՝ ժայռոտ լանջերով սուրում են այնպես թեթև ու անձիգ, կարծես անտեսանելի թևեր ունեն...

Այսօր դարձյալ իմ թաքստոցից դիտում եմ մայր այծերի արոտը: Զրտնաթոր ու հևիհև հասել եմ մի ցածրիկ ժայռի, անցել եմ նրա հետևը և բերանքս վրա պառկած՝ շունչս տեղն եմ բերում: Մոտիկ են, բայց չեն առնում հեքս ու հոտս, որովհետև թույլ քամի է փչում իրենց կողմից դեպի իմ թաքստոցը:

Նրանք երեքն էին, երկուսը՝ սուր-սուր եղջյուրներով և բարալիկ իրանով մայրեր, իսկ երրորդը արու էր, որ թեև դեռ չէր առնականացել և մարմնով դեռ գեղիրան էր մայր այծերի նման, բայց եղջյուրները մի քիչ հաստ էին և նրանց ծայրերը

հեռու էին իրարից: Այդ նշաններից որոշեցի, որ այդ «պատանին» մեկ և կես տարեկան է: Երկու-երեք տարի ևս՝ և նրա եղջյուրները կլինեն հսկայական, մարմինը իր մոր մարմնից խոշոր կլինի կրկնակի չափով, աչքերը կնռոտ կլինեն, իսկ դրնչից կախ կլինի պատկառելի մորուքը:

Խաղաղ արածում են Կապուտջիղի հավերժական ձյան սահմանում և մտքներով չի անցնում, որ իրենցից բոլորովին մոտիկ թաքնված է թշնամին՝ մահաբեր զենքը ձեռքին պատրաստ:

Մի ակնթարթ անց պիտի ձգեի հրացանի ձգանը, երբ գլխովս մի տարօրինակ միտք անցավ. «Էս կենդանին ինչո՞ւ չի արածում...» Այդ մտքից թափս իջավ: Իսկապես, նոր գլխի ընկա, որ մայրերից մի քանի քայլ հեռու, դեմքով դեպի ինձ անշարժ կանգնած կենդանին դունչը չի էլ մեկնում կանաչին:

Չլինի՞ թե պահակություն է անում իր ընկերուհիներին: Ի՞նչ ընկերուհիներ, այս կողմի խոշորը երևի մայրն է, այն մյուսն էլ՝ քույրը... Հակում է, որ նրանք հանգիստ արածեն:

Այդ մտքից քթինքս վրա տվեց. «Նալլաթ քեզ չար սատանա, քիչ էր մնում մեղքի տակ ընկնեի...»

Հրացանս ետ քաշեցի, սուսուփուս ետ սողացի և հեռացա այնպես անձայն ու թաքուն, ինչպես որ եկել էի...

անվանեց «մագնիսի փոր» և «մագնիսի մեջք» և որոշեց, որ մարդու մարմնի տարբեր կետերում բևեռայնությունը տարբեր է:

Այս փաստերի շարանը կարելի է շատ ավելի երկարել... Հետո՞...

Հետո 18-րդ դարի 70-ական թվականներին իր փորձերն սկսեց Ֆրիդրիխ Անտոն Մեսմերը: Նա հասավ մեծ հաջողությունների: Մեսմերը ամենևին էլ միտք չուներ զբաղվելու այդ փորձերով, համալսարանն ավարտելուց հետո նա թողել էր բժշկությունը և ապրուստի միջոց գտնելու նպատակով ամուսնացել մի հարուստ այրու հետ և բժշկության փոխարեն նվիրվել արվեստին: Նա Մոցարտի, Գլյուկի, Հայդնի մոտ ընկերն էր: Իհարկե, այս աշխարհահռչակ անունները մեղք չունեին, որ իրենց շարքում որպես երաժիշտ չդրվեց նաև Մեսմերի անունը. պարզապես նա չէր ծնվել Ապոլոնի կանչով, թեպետ շատ էր սիրում արվեստը: Սիրել կարող են շատերը, իսկ ստեղծելու մեծաշնորհը տրված է քչերին՝ ընտրյալներին: Այո՛, Մեսմերը հասկացավ, որ ինքը արվեստի ասպարեզի ընտրյալներից չէ և նորից վերադարձավ դեպի բժշկություն: Եվ ամեն ինչ սկսվեց հենց առաջին իսկ հիվանդի բուժումից: Հիվանդը տառապում էր ջղաձգությամբ և գլխացավերով: Ոչ մի ճար չեղավ: Դեղերը չօգնեցին: Թվում էր, թե Մեսմերը անելանելի վիճակի մեջ էր. հիվանդը ձեռքից գնում էր: Եվ այս ծայրահեղ հուսահատության պահին Մեսմերը որտեղից-որտեղ հիշեց իր վաղեմի կուռքին՝ Պարացելսին: Այս անունը և նրա հետ կապված լեգենդներն ու ճշմարտապատում զրույցները Մեսմերը լսել էր դեռ աշակերտ ժամանակ: Նա գիտեր, որ Պարացելսը միջնադարի մեծ գիտնականներից է եղել, տիրապետել է մագնիսի գաղտնիքներին, իբր զանազան մետաղներ փոխարկել է ոսկու և, որ ամենակարևորն է, շատ հիվանդություններ է բուժել մագնիսով: Ահա և հերթական այցելության ժամանակ Մեսմերը իր հիվանդի մարմինը պատեց մագնիսով. տարօրինակ կծկումներ անցան ամբողջ մարմնով և կարճ ժամանակ անց հիվանդն իրեն լավ զգաց: Մի քանի այդպիսի սեանս, և հիվանդը... առողջացավ:

Մեսմերը գտնում էր, որ ամբողջ տիեզերքը լցված է «մագնիսական մթնոլորտով», իսկ մարդու մարմնի վրա կան մագնիսական բևեռներ: Եթե այդ մագնիսական մթնոլորտը մարդու մարմնի մեջ է անցնում ճիշտ ճանապարհով, ապա նա առողջ է: Եթե հոսքը խախտված է, ապա մարմնի վրա պետք է դնել մագնիս, որը իր սեփական «մթնոլորտով» կարող է ուղղել, վերականգնել բնական վիճակը: Ընդ որում մարմնի տարբեր մասերի համար Մեսմերն առաջարկում է կիրառել տարբեր ձևի ու չափի մագնիսներ:

Մեսմերի անունը հայտնի դարձավ ամբողջ աշխարհին, իսկ բուժման եղանակները՝ քչերին: Այդ քչերից էր նաև բժիշկ Գրեհեմը: Նա Լոնդոնում 1780 թվականին «Առողջության ամրոց» հնչեղ անվան տակ բացեց մի կաբինետ, ուր տեղակայված էին քառասուն մեծ մագնիսներ: Հիվանդն իջնում էր «Առողջության ամրոցը» և իրավունք էր ստանում գիշերը քնել «աստղային անկողնում», նրա բուժումն ընթանում էր խաղաղ երաժշտության ուղեկցությամբ և հարեմային պարերով:

Մեսմերի հռչակը անհանգստացրեց Ֆրանսիայի թագավորական բժշկական ընկերությանը. որոշվեց հանձնաժողով կազմել և ստուգել մագնիսաբուժման նրա մեթոդները: Հանձնաժողովը եզրակացրեց, որ մագնիսը ամենից առաջ շատ բարերար է ազդում նյարդային համակարգի վրա: Նա օգնում է այնպիսի նյարդային հիվանդությունների, ինչպիսիք են կծկումները, ջղաձգությունը, գլխացավերը և այլն:

Մագնիսաբուժումը գնալով ավելի մեծ թվով կողմնակիցներ էր ձեռք բերում: Բայց, որքան էլ զարմանալի թվա, այդ վերելքը երկար չտևեց: 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբներին մագնիսաբուժումը կորցրեց իր նշանակությունը: Երևի դա կապված էր քիմիայի զարգացման և քիմիական դեղամիջոցների սինթեզման հետ: Մագնիսաբուժման միակ փաստը մեր ժամանակներում ճապոնական «մագնիսային ապարանջանն» է, որը կարգավորում է արյան ճնշումը և հանգստացնում նյարդային համակարգը:

Սրանից բացի ժամանակակից

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



## Արեգակնային համակարգի մոլորակները




Արեգակնային համակարգի վերջին մոլորակը՝ Պլուտոնը աստղագետ Տոմբոն հայտնաբերել է 1930 թվին, դեռևս 1915 թվականին Պ. Լովելլի կատարած հաշվարկների համաձայն:

Պլուտոնը Արեգակի շուրջը պտտվում է 5947 միլիոն կմ միջին հեռավորության վրա՝ մի պտույտ կատարելով 2497 երկրային տարվա ընթացքում:

1955 թվին հայտնի դարձավ, որ նա իր առանցքի շուրջը պտտվում է 6 օր 9 ժամում: Պլուտոնը արտասովոր ուղեծիր ունի, որի հետևանքով Արեգակին երբեմն ավելի է մոտենում, քան Նեպտունը: 1969 թ. մտել է Նեպտունի ուղեծրի մեջ և այդտեղ կմնա մինչև 2009 թվականը: Արեգակից Պլուտոնին հասնող էներգիան 2450 անգամ ավելի փոքր է, քան Երկրին հասնողը:

Հեռադիտակով իններորդ մոլորակը երևում է ինչպես 14—15 աստղային մեծությամբ աստղ: Այժմ որոշված է, որ նրա զանգվածը մոտավորապես հավասար է Երկրի զանգվածին: Մինչև այժմ կարծում էին, որ նրա տրամագիծը 5,5 հազար կմ է: Ժամանակակից տվյալներով հայտնի է, որ Պլուտոնի տրամագիծը 12700 կմ է: Այդ տվյալներով կարելի էր որոշել, որ Պլուտոնի միջին խտությունը հավասար կլինի 50 գ/սմ$^3$:

Արտասովոր ուղեծիրը և տարբերությունը չորս հսկա մոլորակներից այն միտքն են առաջացնում, որ Պլուտոնը ինչ-որ ժամանակ եղել է Նեպտունի արբանյակը:

Գիտությանն այժմ հետաքրքրում է այն հարցը, թե արդյո՞ք Պլուտոնը Արեգակնային համակարգի վերջին մոլորակն է, թե՞ գոյություն ունի մեկ այլ, տասներորդ մոլորակ ևս:

բժշկության մեջ հաճախ օգտագործվում է նաև մագնիսի մեխանիկական ազդեցությունը: Այսպես, օրինակ, աչքից մետաղափոշի կամ մետաղակտոր հեռացնելու (այս մեթոդը 100 տարի առաջ առաջարկել է լոնդոնցի Մեյերը), մարմնի մեջ մտած արկի բեկորները գտնելու և հեռացնելու համար:

Մարդու և մագնիսական դաշտի փոխհարաբերությունը նոր իմաստ ստացավ վերջին երկու տասնամյակներին, տիեզերական թռիչքների շրջանում: Որպեսզի տիեզերական տարածության մեջ միջմոլորակային ճանապարհորդները չենթարկվեն տիեզերական ռադիացիայի մահացու ազդեցությանը, որոշված է տիեզերանավը վարագուրել մագնիսական դաշտով: Սակայն հարց է առաջանում, արդյո՞ք դա տիեզերագնացի համար վտանգավոր չէ: Այս հարցով հետաքրքրվել են դեռ շատ վաղուց: 1892 թվականին Էդիսոնի լաբորատորիայում մագնիսի բևեռների միջև հետազոտողներ Պետերսոնը և Քենելին տեղավորեցին մի շուն, իսկ հետո նաև մի փոքրիկ տղայի և պարզեցին, որ մագնիսական դաշտը օրգանիզմի վրա վտանգավոր ազդեցություն չի ունենում:

Այս վաղեմի հետազոտություններին, իհարկե, այսօր վստահել չի լինի: Դեռ ավելին. մագնիսական դաշտում գտնվող մարդու արյունը հետազոտող բժիշկները եկել են այն եզրակացության, որ մագնիսի ազդեցության տակ այն կրում է որոշ փոփոխություններ: Բացի դրանից հաստատված է, որ երկրի վրա արևաբծերի հետ կապված մագնիսական մրրիկների ժամանակ սիրտ-անոթային հիվանդությունների թիվն ավելանում է, իսկ հիպերտոնիկների վիճակն ավելի է ծանրանում:

Այս և նման փաստերից ելնելով, գիտնական-բժիշկները եզրակացրին, որ ուժեղ մագնիսական դաշտում մարդու երկարատև գտնվելը վտանգավոր է:

Իհարկե, սա չի բացառում այն, որ սովորական, ոչ շատ ուժեղ մագնիսի ստեղծած մագնիսական դաշտը, ինչպես ապացուցեցին միջնադարի գիտնականները օգտակար է մարդու համար:

Վերջում պետք է ընդգծել, որ կենդանի օրգանիզմի վրա մագնիսական դաշտի ներգործության մասին լրիվ և ամփոփ գաղափար մենք դեռևս չունենք:

(Շարունակելի)

ԱՐՏԱԿ ՌՍԿԱՆՅԱՆ



## ԵՂԵԳՆԱԹՌՉՆԻԿՆԵՐԸ՝ ՕԴԵՐԵՎՈՒԹԱԲԱՆՆԵՐ

*Լճի մեջ եղեգների խրձի վրա նկատվում էր եղեգնաթռչնիկի անցյալ տարվա քանդված բույնը: Իսկ կողքին, միայն թե ավելի բարձր, եղեգնահավերը շինել էին նորը: Դրանց վրա ես երևի ուշադրություն չդարձնեի, բայց ուղեկիցս՝ հմուտ որսորդ Մաքսիմովիչը կանգ առավ.*

*— Տեսե՛ք, թե ինչ բարձր են հիմա եղեգնահավերը իրենց բույնը հյուսում,— ասաց նա:*

*— Հետո՞ ինչ,— չհասկացա ես,— ի՞նչ տարբերություն:*

*— Ինչ տարբերությո՜ւն,— բացականչեց որսորդը,— նշանակում է լճում այս տարի ջուրը շատ է լինելու:*

*Ես թերահավատորեն տարուբերեցի գլուխս: Բայց հենց այդպես էլ եղավ: Գարնան վերջին ու ամռան սկզբին հորդ անձրևներ տեղացին: Լճի ջուրն այնքան բարձրացավ, որ խորտակեց եղեգնաթռչնիկների բոլոր հին, նախորդ տարիների բները: Իսկ նորերը չվնասվեցին. նրանք շատ բարձր էին: Եղեգնաթռչնիկները նախապես գիտեին, որ այս տարի լճի ջուրը շատ է լինելու:*

*Մ. ԶՎԵՐԵՎ*

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԵԼ ՕՐՎԱ ՌԵԺԻՄԸ

*Ակադեմիկոս Ե. Ե. ՖԵՐՍՄԱՆ*

«Ժամանակից թանկ բան չկա»: Այս ասացվածքը ասվում է աշխարհի բոլոր լեզուներով:

Եվ իրոք, որքան էլ ջանաս անցած ժամանակը վերադարձնել, չես կարող:

Երբ ես դեռ սովորում էի միջնակարգ դպրոցում, ուսուցիչը մի անգամ հանձնարարել էր գրել, թե մեզանից յուրաքանչյուրը ինչ է մտածում ժամանակի մասին, ինչպես է այն չափում և ինչպես է օգտագործում:

Հիշում եմ, որ այն ժամանակ, ուսուցչի այդ հանձնարարությունը մեզ շատ զարմացրեց: Մեզանից և ոչ մեկը լրջորեն չվերաբերվեց այդ հարցին: Մենք բոլորս բավական լավ գիտեինք, թե ինչպես չափել այն սենյակը, որտեղ պարապում ենք, որքան է դպրոցի և տան միջև ընկած հեռավորությունը, և ընդհանրապես ինչպես են չափում տների և Մոսկվա-Լենինգրադ ... 

Մենք որոշեցինք ճշգրիտ ժամաչափություն անցկացնել:

Պայմանավորվեցինք, որ մեզանից յուրաքանչյուրը մեկ շաբաթվա ընթացքում մանրամասն գրի կառնի, թե օրվա մեջ որքան



### ՄՐՋՅՈՒՆ-ՔԻՄԻԿՈՍՆԵՐԸ

Առվի ափին մրջնակույտի վրա թափվել էին փոքրիկ խխունջներ: Նրանցից մի քանիսը դատարկ էին, իսկ մյուսների վրա տքնում էին շիկակարմիր, անտառային մրջյունները. նրանք ուզում էին հանել խխունջների միջի պարունակությունը: Անտառի մրջյունները գիշատիչ են, և զարմանալի չէ, որ նրանք խխունջներ էին բերել մրջնանոց: Բայց ինչպե՞ս էին իրենց համեմատաբար թույլ ծնոտով կարողանում կրծոտել ամուր խխունջները: Դա հանելուկ էր: Պետք էր մանրազնին և ուշադիր դիտել: Պարզվեց, որ մրջյունները գործում էին ոչ թե ուժով, այլ խորամանկությամբ: Նրանք խխունջների վրա լցնում էին մրջնաթթվի կաթիլներ: Դրանից խխունջները անմիջապես թշշում էին և պղպղում: Թթուն քայքայում էր ածխաթթվային կիրը, որից կազմված է խխունջը:

Խխունջի տնակը կոտրտվում էր, դառնում փխրուն և բարակ, ու դրանից հետո արդեն հեշտ էր լինում կրծոտել: Ով կմտածեր, որ մրջյունները քիմիա գիտեն:

*Պ. ՄԱՐԻԿՈՎՍԿԻ*

ժամանակ է նա ծախսում այս կամ այն աշխատանքը կատարելու վրա:

Պարզվեց, որ մենք ժամանակը միատեսակ չենք օգտագործում, որ մեզանից և ոչ մեկը չունի օրվա կանոնավոր ռեժիմ: Իսկ երբ հաշվեցինք քնելու, վեր կենալու, ուտելու, դպրոցի, դասերը պատրաստելու վրա ծախսած բոլոր ժամերն ու րոպեները, ստացվեց ոչ թե 24 ժամ, այլ բավական պակաս: Մենք զարմացանք, իսկ ի՞նչ եղան մնացած ժամերը:

Մենք հասկացանք, թե որքան թանկարժեք ժամանակ ենք իզուր կորցնում: Եվ այդ օրվանից պայքար հայտարարեցինք ժամանակի ճիշտ օգտագործման համար: Բոլոր գործերի և հանգստի համար կատարեցինք ժամանակի խիստ բաշխում և պահանջում էինք, որ յուրաքանչյուրը անխտիր պահպանի այդ ռեժիմը:

Շաբաթվա վերջում պիտի հայտնեինք իրար, թե ով ինչպես է օգտագործել ժամանակը:

Պետք է խոստովանեմ, որ սկզբում չափազանց դժվար էր վարժվել այդ կարգ ու կանոնին: Գրեթե ամեն օր անսպասելի մի բան խախտում էր այդ ռեժիմը՝ կամ շատ հետաքրքիր գիրքը, որից կտրվելը շատ դժվար էր լինում, կամ արևի տակ նախատեսվածից ավելի երկար խաղալու ցանկությունը և նման բաներ: Բայց մենք աստիճանաբար վարժվեցինք և ի՞նչ՝ բավական շատ ազատ ժամանակ գտանք:

Մեր փորձը պատմեցինք մեր դասընկերներին:

Թեև ոչ բոլորն էին մեզ հետ համաձայն, սակայն շատերը անցան մեր շարքերը և սկսեցին ռեժիմով ապրել:

Ժամանակի համար պայքարում էինք նույնիսկ ամռանը:

Մենք սովորեցինք ոչ միայն ճիշտ չափել և բաշխել, այլև խնայողաբար ու խելացի օգտագործել այդքան թանկարժեք ժամանակը:

Ռեժիմով աշխատելու և հանգստանալու սովորությունը շատ է օգնում մարդուն:

*Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ*



# ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

*Ծանոթ անուն է, այնպես չէ՞: Դուք անշուշտ հիշում եք նրա բազմաթիվ բանաստեղծություններն ու հանելուկները, պոեմներն ու հեքիաթները, որոնք կարդացել եք գրքերում, ամսագրերում, լսել ռադիոյով, իսկ շատերդ էլ հավանաբար արտասանել դպրոցական հանդեսների կամ բանաստեղծի հետ ունեցած հանդիպումների ժամանակ:*

*Նրա մանկական առաջին բանաստեղծությունը տպագրվել է 35 տարի առաջ, «Հոկտեմբերիկ» ամսագրում: Հետագայում նա մանուկների համար գրել է շատ գրքեր. «Առվակ», «Շուշանի երազը», «Գարնանային հրավեր», «Հերոս Վարոսը», «Անմահական խնձորը»: Այդ գրքերում նա պատմում է դպրոցականների, նրանց դասերի ու խաղերի, գործերի ու երազների մասին, գովում է ջանասերին ու աշխատասերին, հանդիմանում ծույլին ու փնթիին: Նրա բանաստեղծությունները հեշտ անգիր են արվում և դժվար մոռացվում: Այդ բանաստեղծություններից կան և դասագրքերում: Սողոմոն Մկրտչյանը գրում է նաև հեքիաթներ: Հիշենք նրա «Հնարագետ պատանին», «Խելք ծախող գյուղացին», «Լավություն արա՝ ջուրը գցիր», «Գյուղացին ու թագավորը» հեքիաթները, որոնք տպագրվել են «Պիոներ» ամսագրում և «Պիոներ-կանչ» թերթում:*

*Սողոմոն Մկրտչյանը կատարել է նաև շատ թարգմանություններ ու փոխադրություններ սովետական և արտասահմանյան գրողներից: Նրա թարգմանությամբ առանձին գրքով լույս են տեսել Ա. Բարտոյի «Ձագուկներ» բանաստեղծությունների ժողովածուն և հնդկական հեքիաթները՝ «Կախարդական թասը» վերնագրով:*

*Երկար տարիներ աշխատելով «Պիոներ» ամսագրում որպես պոեզիայի բաժնի վարիչ, հմուտ մանկագիրը միշտ ուշադիր ընթերցել է դպրոցականների ուղարկած ստեղծագործությունները, օգտակար խորհուրդներ տվել և խրախուսել:*

*Լրացավ սիրելի մանկագրի 60 տարին: Շնորհավորենք նրան և ցանկանանք ստեղծագործական նորանոր հաջողություններ:*

## ԱՊՐԻԼ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Անցնում է նա գույնզգույն
Երգ ու ծաղիկ շաղ տալով,
Հազար բողբոջ է պայթում
Իր կարկաչուն ծիծաղով:

Նա երկնային մաքրաշիթ
Ցողերով է լվացվում,
Ոտքը որտեղ որ դրեց,
Ծիլ ու ծաղիկ է բացվում:

Արեգակը շողացայտ
Ակն է նրա մատանու,
Արդյոք ի՞նչ է անունն այդ
Մաղկահասակ պատանու:

# ԳԱՎԱԹԱԿԻՐՆԵՐԸ

Օրջոնիկիձեի շրջանի ավագ տարիքի աղջիկների թիմը

(Մարզիչ՝ ԷԴՎԱՐԴ ԴԱՆԻԵԼՅԱՆ)

Խաղերի դպրոցի ավագ տարիքի տղաների առաջին թիմը

(Մարզիչ՝ ՎԱՐԴԱՆ ԱՂԱՄՅԱՆ)

Խաղերի դպրոցի կրտսեր տարիքի աղջիկների թիմը

(Մարզիչ՝ ԱՐՏԵՄ ԴՈՎԼԱԹՅԱՆ)

Խաղերի դպրոցի կրտսեր տարիքի տղաների թիմը

(Մարզիչ՝ ԷԴՎԱՐԴ ՎԱՐԴԱՆՅԱՆ)

Անցած տարվա դեկտեմբերի 2-ից մինչև 13-ը Երևանի № 34 միջնակարգ և խաղերի դպրոցների մարզադահլիճներում անցկացվեցին «Պիոներ» ամսագրի գավաթի համար վոլեյբոլի մրցումներ: Մասնակցում էին Երևանի շրջանների մարզադպրոցների և խաղերի դպրոցի աղջիկների ու տղաների հավաքական թիմերը, որոնք բաժանված էին տարիքային երկու խմբի՝ 1957—58 թթ. և 1959—60 թթ. ծնվածներ: Յուրաքանչյուր խմբի համար սահմանված էր մի գավաթ:

— Այս մրցումները քննություն են պատանի մարզիկների համար,— ասաց ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ Վարդան Աղամյանը:—Նրանք ցույց են տալիս, թե ինչ են սովորել տարվա ընթացքում, ինչպես են մարզվել, իսկ գավաթը նրանց աշխատանքի գնահատականն է:

«Պիոների» 1972 թվի գավաթի խաղարկությանը ակտիվորեն մասնակցեցին խաղերի դպրոցը, Օրջոնիկիձեի, Սովետական և Լենինյան շրջանների մարզադպրոցները:

Մրցումների ավարտից հետո հաղթողներին հանձնվեցին գավաթներ ու պատվոգրեր: Ավագ տարիքի աղջիկների խմբում գավաթը շահեց Օրջոնիկիձեի շրջանի թիմը, մնացած խմբերում գավաթակիրներ դարձան խաղերի դպրոցի թիմերը:

Այժմ սկսվել են նոր մարզումներ, նոր մրցումներ: Հաջողություն ենք մաղթում «Պիոներ—73» գավաթի խաղարկության մասնակից բոլոր թիմերին:

ԳԱԳԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Մրցումների գլխավոր դատավոր)

## ԽԱՉԲԱՌ «ԱՐՎԵՍՏ»

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

1. Ֆրանսիացի երգահան։ 7. Հայկական ժողովրդական պար։ 8. Արվեստի ստեղծագործություն։ 10. Հունական դիցաբանության մեջ խաղաղության աստվածուհին։ 12. Մեներգ՝ օպերայում։ 13. Արվեստի տեսակ։ 15. Պերուացի հանրահայտ երգչուհի։ 18. Քնարա-վիպական բանաստեղծության տեսակ։ 21. «Գերնիկա» կտավի հեղինակը։ 23. Նշանավոր պատկերասրահ՝ Փարիզում։ 24. «Երկու քույր» վեպի հերոս։ 25. Շ. Ազնավուրի երգերից։ 26. Հայդնի օպերան։ 28. Բեթհովենի սոնատը։ 30. Ամերիկացի օպերային երգիչ։ 32. Իմպրեսիոնիստ նկարիչ։ 34. Պռոշյանի «Հունո» վեպի հերոսներից։ 35. Գ. Սարյանի բալլադը։ 37. Հունգարացի երգահան։ 38. Հայ գրող։ 39. Ռուս սովետական դաշնակահարուհի, մանկավարժ։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

2. Անտիկ շրջանի հույն քանդակագործ։ 3. Նար-Դոսի «Ճշմարիտ բարեկամ» վեպի հերոսուհի։ 4. Գրական ժանր։ 5. Ֆրանսահայ գրող։ 6. Ռիթմական միավոր՝ չափածո խոսքում։ 9. Ֆրանսիացի բանաստեղծ և էստրադային երգիչ։ 11. Լև Տոլստոյի «Աննա Կարենինա» վեպի հերոսուհի։ 14. Հայ դերասան։ 16. Ամերիկյան ջութակահար։ 17. Ֆրանսիացի գրող։ 19. Ֆինն երգիծաբան։ 20. Հ. Գյուրջյանի քանդակներից։ 21. Սերվանտեսի «Դոն-Կիխոտ» վեպի հերոս։ 22. Ճարտարապետական կառույցի մաս։ 27. «Սասնա ծռեր» էպոսի հերոս։ 29. Հայկական երգիծական ամսագիր։ 30. Ռուս նկարիչ։ 31. Հայ բանաստեղծ։ 33. Ժողովրդական բանաստեղծ-երգիչ՝ Ղազախստանում։ 34. Բանաստեղծական տողերի համահնչյուն վերջավորություն։ 36. Հունական դիցաբանության մեջ՝ պատերազմի աստված։

Կազմեց ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆԸ




Լույս է տեսնում 1923 թվականից։



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ՆՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։

ՎՖ06223 ; Պատվեր՝ 234: Տպաքանակ՝ 83600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/IV 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:




ԳԻՆԸ՝ 10 Կ ԻՆԴԵՔՍ՝ 77806



ՍՄԲԱՏՅԱՆ ԹԱՄԱՐԱ
Երևան, 14 տ.



ՀՈՎՍԵՓՅԱՆ ԱՐԵՎԻԿ
Սիսիանի շրջ. գյուղ Լոր, 12 տ.



ՎԱՍԻԼՅԱՆ ՆՅՈՒՐԱ
Սպիտակի շրջ. գյուղ Կաթնաջուր, 10 տ.



ՊՈՂՈՍՅԱՆ ԿԱՐԻՆԵ
Երևան, 8 տ.